ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԶԶ.

# ԴԱՒԻԹ ՀԱՐՔԱՑԻ ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅ

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՈՐԾԵՐԸ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑ
Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1959

# DAVID HARKAZI
# UNBESIEGTER PHILOSOPH

## LEBEN UND WIRKEN

BEARBEITET

P. NERSES AKINIAN, Dr. h. c.

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1959

# ԴԱՒԻԹ ՀԱՐՔԱՑԻ
# ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅ

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՈՐԾԵՐԸ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑ
Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1959

# Ա Ռ Դ

Ուսումնասիրութիւնս, որ նախնաբար հրատարակուած էր յօդուած առ յօդուած Հանդէս Ամսօրեայի մէջ, (տե՛ս հոս բովանդակութեան ցանկը) լոյս կը տեսնէ այժմ առանձին հատորով:

Առաջին հրատարակութեան ինչ ինչ տեղիքներ այս տեղ կրած են փոփոխութիւններ թէպէտ դիւղնաքեայ:

Կարեւոր գիւտ էր մեզի համար Յովհ. աւագերէցի ժամանակագրութեան այն տեղիքը, որ Դաւիթ «Պոյլեցւոյ» կը հայէր (տե՛ս հոս էջ 70 եւ 102): Այն ժամանակ՝ չէի կրցած լուծել «Պոյլեցին». այժմ կը թուի ինձ ըլլալ <Կոստանդինու> պոլ(ս)եցի. Դաւիթ ուրիշներէն կոչուած է նաեւ «Հռոմեցի», նոր Հռոմի քաղաքացի:

Ընթերցողը պիտի գտնէ նոր յաւելուած մըն ալ հատորիս վերջը ի մասին Գուրգէն բարտուղարի, պռոտոսպաթարի եւ «Հին Հայոց Թուականի»:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

### 1. ԱՂԲԻՒՐՆԵՐ

*Դաւթի անյաղթ փիլիսոփայի Մատենագրութիւնք եւ Թուղթ Գիւտայ կաթողիկոսի առ Դաւիթ. Վենետիկ* 1833, *էջ* 95—642: *Բ. տպ. անդ*, 1932:

*Գիրք սահմանաց Դաւթի անյաղթ փիլիսոփայի եւ աստուածաբան Վարդապետի: Կ. Պոլիս* 1731, *էջ* 1—205: *Կից տպագրուած՝*

— *էջ* 206—286. *«Լուծմունք Սահմանացն Դաւթի անյաղթ փիլիսոփայի»: — Որք միանգամ իմաստութեան ցանկան: Լծ. Ոչ որպէս դուք կարծէք ոչ դոյ իմաստութիւն...:*

— *էջ* 287—321. *Մեկնութիւն Դաւթի փիլիսոփայի, որ է ի կատարումն նորին տաղի որ վասն Սահմանացն իմաստասիրութեան. ասացեալ Ներսէսի, եղբօր Գրիգորի կաթողիկոսի Հայոց, ի խնդրոյ ուրումն սիրողի իմաստութեան (Մեկնութիւն «Ամենայն չար տանջելի» հատուածին):*

*Գիրք Ներածութեան (Պորփիւրի) եւ Վերծանութեան եւ նոցին լուծման: Մադրաս* 1793, *էջ* 17—68 *«Ներածութիւն Պորփիւրի». էջ* 69—323 *«Դաւթի փիլիսոփայի Վերծանութիւն ի Ներածութիւնն Պորփիւրի»: էջ* 325—390 *«Համառօտ Լուծումն Պորփիւրի Ներածութեան» Գր. Տաթեւացւոյ:*

*Ներածութիւն Պորփիւրի. ի գիրս Գիրք տրամաբանութեան Սիմէոն Ջուղայեցւոյ. Կ. Պոլիս* 1728, *էջ* 296*ին կցուած*, *էջ* 1—40. *կից Առածք հինգ*, *էջ* 41—50 *եւ «Նորին Դաւթի աթենականի Հայոց փիլիսոփայի Վասն Բաժանման»*, *էջ* 51—54: *Բ. տպ.* 1794, *էջ* 139—274:

*Սկիզբն եւ նախադրութիւն գրոցն որ ասի ըստ Յունացն Պէրիարմէնիաս . . . թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ: Հրատարակուած է կից Սիմ. Ջուղայեցւոյ Տրամաբանութեան. Բ. տպ. Կ. Պոլիս* 1794, *էջ* 1—137:

*Գիրք մեկնութեան Սահմանաց գրոցն սրբոյն Դաւթի անյաղթ փիլիսոփայի՝ ի յԱթէնս վարժեալ Հայոց Իմաստասիրի, աւարտեալ ի ձեռն հարցման եւ պատասխանւոյ տեառն Առաքելի եռամեծ վարդապետի՝ աշակերտի սրբոյն Գրիգորի Տաթեւացւոյ: Մադրաս* 1797: *էջ* 2—144 *Գիրք Սահմանաց. եւ էջ* 145—650 *Առաքել Սիւնեցւոյ Լուծմունք:*

*Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտէլի, ընծայեալ Էլիասի Իմաստասիրի. ի լոյս էած Յ. Մանանդեան, Պետերբուրգ* 1911, *էջք Ը* + 175 (Bibliotheca armenogeorgica): *Գրախօսած՝ Հ. Գ. Նահապետեան, Բազմավէպ*, 1913, *էջ* 92—95: *Ն. Ադրալեան, Նոր Հոսանք*, 1913, *էջ* 617—620:

*Դաւիթ Հարքացի. հրտ. Գ. Տէր-Մկրտչեան, Արարատ* 1902, *էջ* 937—971. *արտատպուած՝ Վաղարշապատ* 1903:

*Դաւիթ փիլիսոփայի Բան հաւատոյ ընդդէմ հերձուածողաց. հրտ. Գ. Վ. Յովսէփեան, Արարատ* 1906, *էջ* 261—272:

*Հ. Պօղոս Անանեան, Դաւիթ Անյաղթի անտիպ մէկ ճառը, Բազմավէպ* 1956, *էջ* 63—69, 89—94:

Діонисій Өракійскій и армянскіе толкователи. Издалъ и изслѣдовалъ Н. Адонц, Петроградъ 1915.

Eliae in Porphyrii Isagogen et Aristotelis categorias. Ed. Busse, Berlin 1900.

Olympiodori prolegomena et in Categorias Commentarium Ed. A. Busse, Berlin 1902.

Davidis Prolegomena et in Porphyrii Isagogen Commentarium. Ed. Adolfus Busse. Berlin 1904.

*Թէովնեայ յաղագս ճարտասանական կրթութեանց. հրտ. Յ. Մանանդեան, Երեւան* 1938:

*Յովհաննու Որոտնեցւոյ Վերլուծութիւն «Ստորոգութեանց» Արիստոտէլի: Հաւաքական տեքստը, առաջաբանը (ռուս.) եւ ծանօթագրութիւնները Վ. Կ. Չալոյեանի. Թարգմ. (ռուսերէն) Ա. Ա. Ադամեանի եւ Վ. Կ. Չալոյեանի: Երեւան* 1956: Иоанн Воротнсци, Анализ „Категорий“ Аристотеля. Сводный текст, предисловие и примерания В. К. Чалояна. Перевод А. А. Адамана и В. К. Чалояна. Ериван 1956.

Գ. Ջահուկեան, Դաւթի քերականական աշխատութեան նորայայտ ամբողջական ձեռագիր տեքստը: Երեւան 1956. արտատպուած Մատենադարանի Բանբերից. 1956, Թ. 3:

Սուրբ վարդապետացն Հայոց Մովսէսի եւ Դաւթի հարցմունք ընդ երկարմնակս: — Որդիք լուսոյ եւ վերին Սիոնի...: Գիրք ժողովածոյ ընդդէմ Երկարմնակաց, Նոր Ջուղա 1688, էջ 3—272: — Արարատ 1879, էջ 180—188, 210—219: — Գ. Վ. Սրուանձտեանց, Հնոց եւ Նորոց, Կ. Պոլիս 1874, էջ 39—87 (1634ին օրինակուած ձեռագրէ քաղուածաբար): — Մովսէս Խորենացու Հայոց Պատմութիւն. Թարգմ. Խորէն եպ. Ստեփանէի, Պետերբուրգ 1897, էջ 537—554 (Էջմ. Թ. 2048 ձեռագրէ. քաղվ.): — Ֆ. Կոնիբիր, Մ. Խորենացւոյ Պատմութեան ժամանակի մասին, Հանդէս Ամսօրեայ 1903, էջ 152—157. քաղուածօրէն:

Դաւիթ անյաղթ փիլիսոփայի Ներգինացւոյ Գիրք Էակաց, հրտ. ի գիրս «Գիրք տրամաբանութեան Սիմէօնի Ջուղայեցւոյ, Կ. Պոլիս 1728, էջ 254—275: Բ. տպ. Կ. Պոլիս 1794, էջ 206—221:

Ներսիսի Շնորհալւոյ Պատճառ Բարձրացուցէքին Մեկնութեան. հրտ. Մ. Մսերեան, Ճռաքաղ, Գ. (1861—1862), էջ 35—40:

Ե. Լալայեանց, Դաւիթ Անյաղթ (ժո—

վրդական աւանդութեան մէջ)․ Ազգագրական Հանդէս, Ժ․ (1903), էջ 309—312:

## 2․ ՔՆՆՈՒԹԻՒՆՔ

Ղազար Վ․ Ջահկեցի, Դրախտ ցանկալի, Կ․ Պոլիս 1735, էջ 316, 623—624:

Հ․ Մ․ Չամչեան, Պատմութիւն Հայոց, Ա․, Վենետիկ 1784, էջ 539, 782—784:

Հ․ Մ․ Աւգերեան, Լիակատար Վարք եւ վկայաբանութիւն Սրբոց, Ե․ (Վենետիկ 1812), էջ 316—320:

C. F. Neumann, Mémoire sur la vie et les ouvrages de David, philosophe arménien du Ve siècle de notre ére, et principalement sur ses traductions de quelques écrits d'Aristote. Paris 1829, pp. 96. Extrait du Nouveau journal asiatique, t. III, 49—86, 97—153.

Quadro delle opere di vari autori anticamente tradotte in Armeno. Venezia 1825, p. 8—9.

Somal, Quadro della storia letteraria di Armenia, Venezia 1829, p. 29, 41.

C. F. Neumann, Versuch einer Geschichte der armenischen Literatur. Leipzig 1836, S. 59—62.

Դաւիթ Անյաղթ հայ փիլիսոփայ․ Արծուի Վասպուրական, Բ․, 1858, էջ 307—316:

Հ․ Ա․ Սուքրեան, Հելլենաբանութիւն եւ հելլենաբան թարգմանիչք հայկական լեզուի (դար Ձ—Ժ)․ Բազմավէպ 1875, էջ 118—125:

*Հ. Գ. Զ(արպհանէլեան), Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ, Ա. տպ.* 1865, *էջ* 206—214, *Բ. տպ.* 1886, *Գ. տպ.* 1897, *էջ ԻԴ—ԻԶ եւ* 314—324:

— — *Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց (Դ—ԺԳ դար), Վենետիկ* 1889, *էջ* 321—324, 675—676:

*Ա. Մ. Գարագաշեան, Քննական պատմութիւն Հայոց, Տփղիս* 1895, *Դ., էջ* 50—55, 109—110:

von Himpel, David der Armenier; Wetzer und Welte's Kirchenlexikon. *Բ. տպ., Հատոր Գ.* (1884), *էջ* 1411—1413:

David, philosophe arménien du V^e siècle: P. Larousse, Grand dictionnaire universel, t. VI, p. 159.

Kroll: Pauly's Realenzykliopädie der Klassischen Wissenschaften. Suppl. 4,2 (1901), S. 2231—2232.

*Հ. Աճառեան, Հայոց անձնանունների բառարան, Երեւան, Հատոր Բ.* (1944), *էջ* 24—32:

O. Bardenhewer, David der Unbesiegte: Geschichte der altchristlichen Literatur, V (1932, Freiburg), S. 217—219.

*Վ. Փափազեան, Պատմութիւն Հայոց գրականութեան, Թիֆլիս* 1910, *էջ* 85—88:

*Ա. Զամինեան, Պատմութիւն Հայոց հին գրականութեան, Բ. տպ., Պէյրութ* 1941, *էջ* 111—113:

Հ. Կ. Քիպարեան, Պատմութիւն հայ գրականութեան, Ա., Վենետիկ 1944, էջ 96—112 114—115:

A. Busse, Die neuplatonischen Ausleger der Isagoge des Porphyrius, Berlin 1892.

F. C. Conybeare, Anecdota Oxonensia. A collation with the ancient armenian versions of the greck text of Aristoteles Categories de Interpretatione, de Mundo, de Virtutibus et Vitiis and of Porphyry's Introduction. Oxford 1892, 8° pp. XL + 184.

Ներածութեան հայերէն թարգմանութիւնը՝

Փ. Կ. Կոնիբեր, Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի կամ թարգմանութեանց Արիստոտէլի. Թարգմանութիւն (ի ձեռն Հ. Յ. Տաշեան) եւ Յաւելուած Արիստոտէլի Յաղագս Աստուծոյ: Վիեննա 1893, էջ է + 92 (արտատպ. Հանդէս Ամսօրեայէ, 1893):

Նոյնը՝ Կոնիբեր, Համեմատութիւն Դաւիթ Անյաղթի գրեանց յունարէն բնագրի հետ. անգլիերէնից թարգմ. Փ. Տէր-Մովսէսեան, Վաղարշապատ 1893, էջք 51 (արտատպուած Արարատ 1892—1893):

— Գրախօսած՝ Գ. Ա. Ճոււմփ, Մուրճ, 1892, էջ 1833—1840:

Հ. Ղ. Ալիշան, Դաւիթ (Հագներգու). ի գիրս՝ Հայապատում Ա. (Վենետիկ 1901) էջ 42—43:

Յ. Մանանդեան, Ուսումնասիրութիւն Դաւիթ Հարքացի փիլիսոփային վերագրուած

*իմաստասիրական երկերի*, Արարատ 1904, էջ 158—171, 564—577, 649—657: Արտատպուած՝ *Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ. մատենագրական հետազօտութիւն*, Վաղարշապատ 1904, էջք 39:

Գ. Վ. Յովսէփեան, *Դաւիթ փիլիսոփայ (Հարքացի) Է. դարու մատենագիր*, Արարատ 1906, էջ 261—272, 1907, էջ 81—93, 274—289, 1916, էջ 898—911:

— — *Դաւիթ Հարքացին եւ Պիտոյից գիրքը*, Արարատ 1908, էջ 203—216:

Missak Khostikian, David der Philosoph. Bern 1907, էջք 80 (Berner Studien zur Philosophie und ihrer Geschichte. Bd. LVIII). Գրախօսած՝ Գ. Վ. Յովսէփեան, Արարատ 1907, էջ 961—969:

Յակոբ Մանանդեան, *Յունական դպրոցը եւ նրա զարգացման շրջանները. քննական ուսումնասիրութիւն*: Վիեննա 1928 (արտատպ. Հանդէս Ամսօրեայ).

Հ. Ն. Ակինեան, *Դասական հայերէնը եւ Վիեննական Մխիթարեան Դպրոցը*. Վիեննա 1932. էջ 85—120 (Յունաբան Դպրոցը):

В. К. Чалоян, Философия Давида Непобедимого. Ериван 1946:

Գ. Ջահուկեան, *Քերականական եւ ուղղագրական աշխատութիւնները հին եւ միջնադարեան Հայաստանում (Ե.—ԺԵ. դար)* Երեւան 1954, էջ 114—160, 323—24:

## ՄԱՍՆ Ա.

# ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ

## ՅՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԻ ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐՆ ԸՍՏ ՀԱՅ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆ

*Հայ մատենագրութիւնը ունի իր ծոցը հոյլ մը իմաստասիրական եւ աստուածաբանական գրութիւններու, որոնց հեղինակ եւ թարգմանիչ ներկայացուցած է հայ աւանդութիւնը «Դաւիթ Անյաղթ»:*

*Իսկ թէ ո՞վ է այդ Դաւիթը, ե՞րբ եւ ո՞ւր առաւ իր ուսումը եւ բարգաւաճեց իր գործունէութիւնը, այս մասին գրաւոր աւանդութիւնը կը հանէ մեր առջեւ ծրար մը վաւերագիրներու, որոնք մինչեւ ԺԹ. դարու վերջը, ըստ մասին նաեւ ցայսօր նկատուած էին արժանահաւատ, գոնէ չեղաւ մէկը, որ լրջօրէն ուսումնասիրէր անոնց պատմական արժէքը: Անհրաժեշտ էր սակայն խզել աւանդութեան պարտադրած կապանքները եւ քողազերծել Անյաղթ Դաւթի դիմակը, ճանչնալու համար անոր իսկական դէմքը, որոշելու համար անոր ժամանակը եւ մատնանշելու համար անոր հարազատ գործերը· իսկ անհարազատները վերադարձնել իրենց*

անուանի եւ անանուն տէրերու: Որովհետեւ իմաստասիրական գրութիւնք հիմը կազմեցին Հայ իմաստասիրական ուսմանց, եւ աստուածաբանականք կարեւոր շրջանի մը կրօնապատմական հայեցողութեան աղբիւր կը ծառայեն, հեղինակներու եւ թարգմանութեան ժամանակի ճշդումը պիտի լուսաւորէ Հայ մատենագրութեան կարեւոր դարաշրջանի մը պատմութիւնը:

1833ին հրատարակեցին Վենետիկի Մխիթարեանք «Դաւիթ Անյաղթի» գրութիւնները հաւաքած մէկ հատորի մէջ: Որովհետեւ այդ հատորին մեծագոյն մասը Արիստոտէլի գրութիւններն եւ անոնց Մեկնութիւնները կը գրաւէին, ուշադրութիւն դարձուցին անոր նախ Եւրոպացի գիտունները, Neumann, Conybeare եւ Busse, ապա մեր դարուն՝ Մանանդեան, Յովսէփեան, Խոստիկեան եւ Ադոնց: Անոնց ուսումնասիրութիւնները լուծեցին շատ կնճիռներ. բայց կը կարօտի դեռ Դաւիթ Անյաղթի հարցը նոր քննութիւններու:

Իմ նպատակս պիտի ըլլայ հոս նախ ցոյց տալ Դաւիթ Անյաղթի ընծայուած Մեկնութիւններու յոյն բնագիրներն եւ անոնց Մեկնիչները. ապա ճշդել այդ Մեկնութիւններու թարգմանութեան ժամանակը, ի վերջոյ ի խնդիր ելլել պատմական Դաւիթ փիլիսոփայի եւ անոր հարազատ հեղինակութիւններու:

Հարցաքննութեան պիտի կոչուին.

1. Դաւիթ նորպղատոնական իմաստասէր,
2. Դաւիթ Ներգինացի,
3. Դաւիթ Բագրեւանդացի,
4. Դաւիթ Տարօնեցի,
5. Դաւիթ Հարքացի,
6. Դաւթակ քերդող եւ
7. Դաւիթ Հիւպատ:

## 1. ԴԱՒԻԹ ՆՈՐՊՂԱՏՈՆԱԿԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐ

*Ունինք յունարէն սկզբնագրով (եւ հայերէն թարգմանութեամբ) չորս իմաստասիրական գրուածքներ, որոնք յոյն վերնագիրներու մէջ կը կրեն ἀπὸ φωνῆς Δαβίδ, այսինքն Դաւիթ դասախօսած է եւ աշակերտութիւնը գրի առած: Ծանօթ չէ մեզի այս դասախօս Դաւթի կենսագրութենէն որ եւ է գիծ. չգիտենք անոր ազգը եւ հայրենիքը: Ան կը յիշէ Սահմանաց գրքին մէջ իր ուսուցիչն Ողիմպիոդորոս իմաստասէրը, որ ըլլալու է կրտսերն Ողիմպիոդորոս, աշակերտ Ամմոնիոսի, Հերմիասի որդւոյն, որ գործած է Աղեքսանդրիա, Զ. դարու առաջին կէսին, եւ էր ուսուցիչ Եղիասի եւ Դաւթի. ուստի Դաւիթ պէտք է ապրած ըլլայ Զ. դարու երկրորդ կէսին:*

*Դաւթի անունը կրող գործերն են հետեւեալները.*

1. *Τὰ προλεγόμενα τῆς φιλοσοφίας ἀπὸ*

*φωνῆς Δαβὶδ τοῦ θεοφιλεστάτου καὶ θεόφρονος φιλοσόφου.*

*Հրտ.* A. Busse, 1904, *էջ* 1—79: *Հայ թարգմ. Վենետիկ* 1833, *էջ* 120—214: *Խորագիրը «Յառաջաբանութիւնք իմաստասիրութեան ի ձայնէ Դաւթի յոյժ աստուածասէր եւ աստուածախոհ փիլիսոփայի». Հայերէն թարգմանութեան հնագոյն ձեռագիրներն ունին.* Դաւթի փիլիսոփայի Ներգինացւոյ Յառաջաբանութիւն (*Թ.* 1716 *Յառաջաբանք*) սահմանաց իմաստասիրութեան. *Էջմ.* 1747 (*յամէ* 1243), 1716 (1276). *«Յաղագս իմաստասիրութեան յառաջաբանութիւն <Դաւթի> փիլիսոփայի եւ անյաղթ իմաստասիրի». Պարիս, Ազգ. Մատ.* 302 (1282): *Այլք լոկ «Գիրք սահմանաց իմաստասիրութեան», «Սահմանք իմաստասիրութեան» (Հմմտ. Մանանդեան, Յունաբան Դպրոց, էջ* 259—291):

*Յառաջաբանութիւնք կ'աւարտին.* «Դաւթի մեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ առարկութեանցն չորից Պիհրոնի իմաստակի եւ սահմանիք եւ տրամատութիւնք իմաստասիրութեան», *որ Վենետիկի հրատարակութեան մէջ իբրեւ խորագիր առնուած է: Այս վերջաւորութեան մաս կը թուի* «Այս գծածք հանդիսադիր խմբի յառաջագոյն (*տպ. խմբից առաջնոցն*) տառից տրամախոհ իմաստասէր մակացու արանց (*տպ. ներբողեալ*) ի Դաւթէ եռամեծէ են–

թագրեցաւ» (*տպ. ընթագրեցաւ*). *որ գետեղուած է յաջորդ «Ամենայն չար տանջելի» եկամուտ հատուածին վերջը* (*էջմ.* 1747. *Մանանդեան*, *էջ* 260. *տպ.* 216):

*Այս տեղ «այս գծածք... իմաստասէր մակացու արանց ի Դաւթէ եռամեծէ ընթագրեցաւ» բացատրութիւնն է ἀπὸ φωνῆς ասութեան*[1]: *«Ընթագրեցաւ» տարկական թարգմանութիւնն է յունարէն ὑπογράφω բային, որուն իմաստն է ըստ* Alexandre*ի* ecrire sous la dictée de quelqu'un, *գրել մէկու մը թելադրութեան ներքեւ, այն է «ի ձայնէ» կամ «ի Դաւթէ թելադրուած»*:

2. *Σχόλια σὺν θεῷ τῆς Πορφυρίου εἰσαγογῆς ἀπὸ φωνῆς Δαβίδ τοῦ θεοφιλεστάτου φιλοσόφου.*

*Հրտ.* A. Busse, 1904, *էջ* 80—219: *Հայ թարգմ.* *էջ* 251—356: *Հայն. անի.* Դաւթի փիլիսոփայի Ներքինեցւոյ Վերլուծութիւնն ի Ներածութիւնն Պորփիւրի:

3. *Ἐξήγησις σὺν θεῷ τῶν δέκα κατηγοριῶν τῆς φιλοσοφίας ἀπὸ φωνῆς Δαβίδ τοῦ θεοφιλεστάτου φιλοσόφου.* (*Դաւթի փիլիսոփայի Մեկնութիւն տասն ստորոգութեանցն Արիստոտէլի*).

*Հրտ.* A. Busse, Eliae in Porphyrii Isagogen, *էջ* 107—255.

---

[1] *Հմմտ.* D. Serruys, *'Ἀπὸ φονῆς:* Revue de philologie 35 (1911), 71—74.

*Հայ թարգմանութիւնը ծանօթ է միակ, սկիզբէն թուղթ մ'ինկած ձեռագրէ՝ էջմ. թ. 1939: Հրատարակեց Յ. Մանանդեան, Պետերբուրգ 1911, կը սկսի յոյն բնագրի էջ 108, տ. 2էն:*

*Յոյն ձեռագիրները Դաւթի անունը կը կրեն. Բուսէ վերագրած է Ելիասի. Մանանդեան ապա ենթադրած է, թէ Ողիմպիոդորի ըլլայ: Ես կը կարծեմ թէ նաեւ Հայերէն թարգմանութիւնը Դաւթի անունը կը կրէր:*

## 2. ՅԱՄԲՂԻՔՈՍ ԵՒ ԱՄՄՈՆԻՈՍ ՀԵՐՄԻԱՍ («ԱՆՏՈՆԻՈՍ ԵՐՄԻՍ») ՆՈՐՊՂԱՏՈՆԱԿԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐՆԵՐ

*Յամբղիքոս* (Iamblichos) *ասորի, Հայրենեօք Քաղկիսեցի, աշակերտած Անատոլիոսի եւ Պորփիւրի, գործած է Դ. դարու առաջին կէսին յԱպամիա. հեղինակած է բազմազան իմաստասիրական երկեր, անոնց թուի մէջ Արիստոտէլի Ստորոգութեանց, Պերիարմենիասի, Ա. Վերլուծութեանց Մեկնութիւնները: Իսկ Ամմոնիոս ծաղկեցաւ Ե. դարուն իբրեւ պարագլուխ Աղեքսանդրիայի դպրոցին. իմաստասէրներ էին նաեւ իր հայրը Հերմիաս* (Hermeias) *եւ եղբայրը Հելիոդորոս: Ամմոնիոս գրած է Արիստոտէլի Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան եւ Վերլուծութեան՝ մեկնութիւններ,*

*նաեւ Վերլուծութիւն մը Պորփիւրի Ներածութեան։ Ունինք անոնցմէ.*

1․ Ստորոգութիւն Արիստոտէլի որ կոչի յունարէն Կատիղորիս։

*Ձեռագիրներէն ոմանք նախ Տասն ստորոգութիւնք ամբողջութեամբ կու տան եւ ապա անոնց Մեկնութիւնը, միւսանգամ արտագրելով Մեկնելի բնաբանները. ուրիշներ կը գտնուան Բնաբան-Մեկնութիւններով։*

*Ստորոգութեանց այս Մեկնութիւնը կը սկսի. (Բն.) Համանունք ասին որոց անունանք միայն հասարակ...։*

*Մեկնիչ. Համանունութիւն լինի ըստ երկուս յեղանակս՝ ըստ պատահման կամ մտածութեան...։*

*Վենետիկի տպագրութեան համար բնագիր առնուած օրինակին մէջ սկիզբէն ընդարձակ հատուածներ դուրս ինկած են, այսինքն՝ Համանունանք, Ստորոգութիւնք, յղ. Գոյացութեան, յղ. Քանակի, յղ. Առընչի գլուխները, եւ յղ. Որակի եւ որակութեան գլխոյն Ա—Զ պրակները։ Տպագրողները այս մասին վերնագիր դրած են. «Ստորոգութիւնք Արիստոտէլի թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ։*

*Տպ. էջ* 409—458*: Ձեռագիրք տես Մանանդեան, Յունարան Դպրոցը, էջ* 262 *եւ չար.։*

Վիեննայի Թ. 112 ձեռագրին համաձայն Ստորոգութեանցս Մեկնիչներն են «Ամիլաւխոյս», որ մեկնած է «ի Ժ Դ հատորս» Համանունութիւնն եւ Քանակը (Թղ. 3ա—48բ)։ Հոս «Ամիլաւխոյս» տառնց տառականի Յամբլիքոսն է։ Իսկ Յղ. Առընչի — Յղ. Ունելոյ ստորոգութեանց մեկնիչն է «Անտոնիոս Երմէս» կամ «Երմիս», իմացիր՝ Ամմոնիոս (որդի) Հերմիասի։

Ուստի Դաւիթ որ եւ է գործ չունի հոս։

Յոյն բնագիրը հրատարակած է A. Busse.

2. Սկիզբն եւ նախադրութիւն գրոցն, որ ասի ըստ Յունաց Պերիարմէնիաս (περὶ ἑρμενίας) եւ հայերէն Յաղագս Մեկնութեան. արտադրեալ ի մեծ Հելենացւոց իմաստասիրէն Արիստոտէլէ, թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ փիլիսոփայէ Ներգինացւոյ։

Բնաբան եւ Մեկնութիւն։

Ձեռագիրք՝ էջմ. 1716, Թղ. 276ա—344բ։

Հրտ. Վենետիկ, էջ 461—486 բնագիրն, էջ 487—553 Բնաբ. եւ Մեկն. պակասաւոր, համմտ. էջ 512—513)։

Վիեննայի Թ. 112, Թղ. 112ա 190ա ունի. «Ասացեալ յԱրիստոտելէ Յղ. Մեկնութեան, որ կոչի Պերիարմենիաս։ Բն. Նախ արժան է դնել զինչ անուն...։

Մեկնութիւն Ամելախոյսի ասացեալ.

ծառեցաւ մեզ երբեմն, եթէ ամենայն բանական իրողութեանս . . . :

3. Դաւթի անյաղթ փիլիսոփայի Մեկնութիւն ԺԴ գլխոց Արիստոտէլի ի Վերլուծականն (᾿Αναλυτικὰ):

*Դիտաւորութիւն Արիստոտէլի ի Վերլուծականէն բուռն հարկանել . . . :*

*Խորագիրը պէսպէս ունին ձեռագիրք. կը յիշեմ. «Նորին Դաւթի քաջ փիլիսոփայի հաւաքեալ յԱռաջնոց Վերլուծականաց Արիստոտէլի, որ կոչի Վերլուծական եւ ըստ Յունաց Անալոտիկէ». «Սկիզբն եւ նախադրութիւն գրոց, որ ասի ըստ Յունաց Անալոտիկէ եւ հայերէն Յաղագս Վերլուծութեան. արտադրեալ ի Մեծ իմաստասիրաց Հելլենացւոց Արիստոտէլէ եւ թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ փիլիսոփայէ» եւ այլն (Էջմ. 340, 383ա, 464, 150բ):*

*Յոյն բնագիրը տակաւին չէ յայտնուած: Հայ. Թարգմանութիւնը հրտ. Վենետիկ* 1833, *էջ* 557—598:

*Ձեռագիրք «Դաւիթ» կ'անուանեն անոր Մեկնիչը: Եթէ հարազատ է այն՝ սկզբնագրին մէջ ըլլալու էր «ի ձայնէ Դաւթի»:*

3. ՈՂԻՄՊԻՈԴՈՐՈՍ, ԱՆԴՐՈՆԻԿՈՍ, ԿԱԼԻՄԱՔՈՍ

*Յովհ. Որոտնեցի (ու Գր. Տաթեւացւոյ) ձեռքի տակ ունեցած է Ողոմպիոդորոսի Մեկնութիւնն Սահմանութեանց. կը*





վկայէ Գրիգոր Մագիստրոս, թէ գտած է «ի Հայ լեզու գրեալ թարգմանչացն՝ զգիրս Ողոմպիոդորոսի, զոր Դաւիթ յիշատակէ, կարի յոյժ սքանչելի եւ հրաշալի բանաստեղծութիւնս մակաւասար բոլոր իմաստասիրական բանից. գտեալ եմ եւ զԿալիմաքոսի եւ զԱնդրոնիկեայն ի Հայ լեզու» (Թուղթ ԻԱ. էջ 66): Այս գրուածքները տակաւին յայտնուած չեն, ոչ յոյն բնագիրներով եւ ոչ ալ հայերէն թարգմանութեամբ: Յ. Մանանդեան գտած էր էջմ. Թ. 1939 ձեռագրին մէջ Ստորոգութեանց երկու Մեկնութիւններ, մին սկիզբէն պակաս. եւ երկրորդը սկիզբէն եւ վերջէն պակաս: Առաջինը յոյն բնագրին մէջ կը կրէ. «ի ձայնէ Դաւիթի», զոր յիշեցի վերը, երկրորդը անծանօթ հեղինակի մը գործ: Այս իրողութիւնը ցոյց կու տայ, որ կան տակաւին իմաստասիրական երկեր, որոնք կը սպասեն խուզարկու ձեռքի:

## 4. ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ

Երբ հելլէն նորպղատոնական Դպրոցը Բիւզանդական արեւմուտքի մէջ իր օրհասական տագնապը կ'ապրէր, բուռ մը Հայեր ի բուռթեան խորհուրդ կ'ընեն հելլէն իմաստասէրներու գրական աշխատութիւնները հայերէնի թարգմանել, յաւերժացնելու համար զանոնք հայ գրականութեան մէջ: Ինչպէս կ'երեւայ, այդ կորովիները աշխարհիկ

են, սիրող իմաստասիրութեան. անոնց պարագլուխը պէտք է իմաստասիրական Դպրոցի ընթացքը ըրած ըլլայ, մերձաւոր մը Նորպղատոնական իմաստասէրներու, ծանօթ անոնց հին եւ նոր գործերուն, եւ գրամոլ մը, որ հաւաքած է իր գրադարանին մէջ կարեւոր աշխատութիւններ:

Այդ խորհուրդին մէջ կը շինուի աշխատութեան ծրագիր մը. նախ թէ ի՞նչ գրքեր պիտի թարգմանուին. երկրորդ՝ ի՞նչպէս պիտի թարգմանուին: Նկատմամբ առաջին կէտին, կը հետեւին Դպրոցական դասաւանդութեան կարգին.

1. Քերականութիւն.
2. Ճարտասանութիւն.
3. Մեկնաբանութիւն.
4. Իմաստասիրութիւն.

Յանդուգն էր թարգմանութեան կերպի մասին տրուած որոշումը: Թէպէտ հմուտ էին թարգմանիչները գրական հայերէնին, քերականութեան, բառամթերքին եւ բառակազմութեան, բայց եւ այնպէս շեղեցան արքունի ճանապարհէն, բռնեցին ինքնագլուխ ուղեգիծ մը, ստեղծեցին ինքնահնար բարբառ մը եւ թարգմանութեան կերպ մը, այն նպատակով որ հելլենամիտ հեղինակներու մտածմունքները եւ հելլենագիր արտայայտութիւնները ըստ կարելւոյն նոյնութեամբ հայացնեն: Այս սարկական թարգմանութիւնները, որոնք Արիստոտէլի գոր-

ծերն եւ անոնց Մեկնութիւնները պիտի ներկայացնէին հայ ուսումնատենչ ուսանողներու, թէեւ երկար դարեր իմաստասիրութեան դասագիրքներ ծառայեցին, բայց մնացին շատերու համար անմարսելի։ Նորահնար բառերէ եւ բարդութիւններէն մաս մը սակայն մուտ գտան գրական հայերէնի մէջ։

Նորարեր թարգմանութիւններուս թէ յոյն բնագիրներն եւ թէ նորաձեւ հայերէն լեզուն կռուաններ պիտի ծառայեն մեզի ճշդելու Յունաբան Դպրոցի գործունէութեան ժամանակը։

Ողոմպիոդորոս, ուսուցիչն Դաւիթի եւ Եղիասի, գործեց Զ. դարու առաջին կէսին. Դաւիթ եւ Եղիաս ծաղկեցան նոյն դարու երկրորդ կէսին, ուստի Դաւթի Մեկնութիւնները թարգմանուեցան կամ Զ. դարու վերջին տասնեակին եւ կամ Է. դարու առաջին տասնեակին։ Յունաբան Դպրոցի թարգմանութիւններէն մէկն է Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, թարգմանուած հաւանօրէն այն թարգմանիչէն, որ թարգմանած էր Դաւթի Մեկնութիւնները։ Հակաճառութեան թարգմանութիւնը կատարուած է, ինչպէս կը տեսնուի, Է. դարու սեամքին. կը յիշուի 606ին։

Յ. Մանանդեան, որ մասնաւոր ուսումնասիրութիւն մը նուիրեց Յունաբան Դպրոցին, մանր քննելով այդ Դպրոցին արտա-

գրութիւններու լեզուական յատկանիշները, զանազանեց չորս խումբեր. առաջին երկու խումբերն են.

Ա. 1. Դիոնեսիոս Թրակացւոյ Արուեստ քերականութեան։

2. Գիրք Պիտոյից.

3. Փիլոն Եբրայեցւոյ գրութիւնք.

4. Իրենէոսի գրութիւնները.

Բ. խումբ.

Բ. 5. Արիստոտելի Ստորոգութիւնք.

6. Արիստոտելի Պերիարմենիաս.

7. Պորփիւրի Ներածութիւն.

8. Յամբլիքոսի եւ Ամմոնիոսի Մեկնութիւնք Ստորոգութեանց.

9. Յամբլիքոսի Մեկնութիւն Պերիարմենիասի.

10. Թէոնի Յաղագս ճարտասանական կրթութեանց։

11. Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւն։

Այս Ա. եւ Բ. խումբերու թարգմանիչները պէտք է նկատուին Յունաբան դպրոցի հիմնադիրներ, որոնք միախորհուրդ, թարգմանութեան արուեստի մէկ կաղապարի վրայ, միաձեւ քերականութեամբ եւ բառակերտութեամբ, իւրաքանչիւրն իւրայատուկ ոճաբանութեամբ, թարգմանեցին յամառութեամբ, առանց հարցնելու մեծաւորաց եւ փոքրաւորաց, այդ 11 գրութիւնները. եւ հանեցին զանոնք հրապարակ։

*Այս կը պատահի, ինչպէս ինծ կը թուի,* 590—610 *տարիներուն: Այս քան տարիները պէտք է նկատել թարգմանութեանցս* post quem *եւ* ante quem *եզրները:*

*Թէ ո՞ւր հաստատուած էր Յունաբան Դպրոցը, չունինք որ եւ է նշմար մեզի մատչելի աղբիւրներու մէջ: Բայց կ'երեւայ թէ Տիմոթէոսի Հակաճառութիւնը թարգմանուած է Եդեսիա, որ այս շրջանին Միարնեաններու կեդրոն էր. հմմտ. իմ Դասական հայերէնը, էջ* 105—106) *:*

*Մեզի անծանօթ են նաեւ թարգմանիչներուս անունները, թէեւ հայ աւանդութիւնը կը յիշէ զանազան անուններ:*

*Թարգմանութեանց նորահնար բառերը անծանօթ են հայ գրականութեան մինչեւ Է. դար. ինչպէս նաեւ բոլոր նորաբեր թարգմանութիւնք:*

*Գալուստ Տէր–Մկրտչեան* (*Միաբան*), *որ պատգամած էր* 1892*ին. «Դաւիթ Անյաղթի գրութիւնները մինչեւ Զ. դարի վերջը կամ նոյն իսկ մինչեւ Է. դար յայտնի չէին հայ մատենագրութեան մէջ»* (*Հանդ. Ամս.* 1892, *էջ* 372), 1908*ին, երբ լոյս տեսաւ Տիմոթէոսի Հակաճառութիւնը, տոմարական հաշուով մը ուզեց անոր թարգմանութիւնը* 480—484 *տարիներուն կատարուած ապացուցնել: Իր կռուանն է Հակաճառութեան երկիցս յիշուած տեղիքս. «Թովմ* (*ապ. Թուղթ*) *Է. սեպտեմբերի Բ.*

հոռի Զ.», երբ վախճանած է Դիոսկորոս Աղեքսանդրացի: Հայոց շարժական տարւոյ հոռի Զ. կը հաւասարակշռուի սեպտ. Ի.ին միջեւ տարիներուն (Արարատ 1908, էջ 564—589 եւ Շողակաթ 1913, էջ 154—163): Մանանդեան նկատելով թէ «Թովթ է» Կնիք հաւատոյ կը կարդայ «Թովի Ե.», երեք ամսաթուերու համաձայնութիւնը կը գտնէ 552—556 տարիներուն (Յունարան Դպրոցը, էջ 101): Այս խնդրով գրաղած էի եւ ես (Հանդ. Ամս. 1908, էջ 295 եւ Դասական հայերէնը, էջ 95—100). որովհետեւ Դիոսկորոս ըստ այլ աղբիւրներու վախճանած է 454 սեպտ. 4. առաջարկած էի Սեպտ. Ի. եւ Հոռի Զ. կարդալ «Սեպտ. Դ. Սահմի Զ.» որով կը ստանայինք 601—604 տարիները:

Այժմ կ՚անդրադառնամ, թէ այս բոլոր փորձերը սխալ ելակէտ մը իրենց հիմ ունէին: Սխալ էր կարծել թէ թարգմանիչը Հայոց շարժական տարւոյն հոռի ամսոյն օրերը նժարի վրայ դրած է եւ Թովթ է. սեպտ. Ի. ամիսներու հետ հաւասարակշռած: Ինչպէս այլուր ապացուցած եմ, մեր թարգմանիչները երբ որ եւ է ամսանունին հանդիպած են իրենց թարգմանութեանց բնագիրներու մէջ, հետեւած են անշարժ տոմարի համապատասխան ամիսներու, հիմ առնելով կամ Ասորամակեդոնական, կա՛մ Արաբ—ղամասկեան եւ կա՛մ Բիւզանդական տոմարները (Հմմտ. Ակի—

նեան, Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու եւ Հայոց եկեղեցական տարին Է. դարու սկիզբը, Վիեննա 1950. էջ 80—94):

Այս տեղ հետեւած է թարգմանիչը Ասորամակեդոնական տոմարին, ուր Թովթ (Էլուլ) կը հաւասարակշռէր հոռի ամսոյն:

Հոս աչքի առաջ պէտք է ունենանք, որ Տիմոթէոս Կուզ Դիոսկորոսի առ Սեկունդինոս գրած մէկ թուղթէն կոչում մը տալով, կը յիշէ առընթեր, թէ այդ թուղթը գրած է Դիոսկորոս յաքսորս ի Գանգրա, «ուր գընթացն կատարեաց ի Քրիստոս. Թովթ (տպ. թուղթ) է. սեպտեմբերի Բ. Հոռի Զ.» (էջ 277): Այս տեղիքը ասորի թարգմանիչը տուած է պարզապէս «ուր գընթացն կատարեաց ի Քրիստոս. սեպտեմբերի ամսոյ Զ.» (British Museum, Add. 12156, գրուած 562էն յառաջ, հմմտ. E. Schwarz, Codex Vaticanus gr. 1431, eine antichalkedonische Sammlung aus der Zeit Zenos, München 1927, էջ 125): Դիոսկորոսի մահուան տարին ճըշդագոյնս տուած է իր կենսագիրը Թէոփիստոս. 454, էլուլ (=Սեպտ. տարեգլուխ անուանած Սեպտ. 1) ամսոյն 4ին, գիշերուան ժամը 11ին. (F. Nau, Histoire de Dioscore, patriarche d’Alexandrie, écrite par son disciple Theophiste: Journal Asiatique, 1903, p. 5—108, 241—310): Յիշած է դէպքս նաեւ Պետրոս Իբերացւոյ կենսագիրը պատահած

«Էլուլ Է.»ին (R. Raabe, Petrus der Iberer, Leipzig 1895, էջ 63)։

Աղեքսանդրեան տոմարի համաձայն 452—455 տարիներուն Թովթ (Էլուլ, Հոռի= Սեպտեմբեր) տարեգլուխը կ'իյնայ յուլեան աւգոստոս 30ին (փոխանակ աւգ. 29ի), ուստի սեպտեմբեր 6, Հոռի Զ. կը համաձայնին ըստ Աղեքսանդրեան տոմարին. իսկ ասորական–բիւզանդական տոմարներու համաձայն (որոնք տարեգլուխը յուլեան Սեպտեմբեր 1ին ունին) սեպտեմբեր 4ին. այսպէս.

| Թովթ = Սեպտ. = Հոռի | | | |
|---|---|---|---|
| | 1 | աւգոստոս | 30 |
| | 2 | " | 31 |
| | 3 | սեպտ. | 1 |
| | 4 | " | 2 |
| | 5 | " | 3 |
| | 6 | " | 4 |

Աղիւսակս կը թելադրէ, որ հայ բնագրի սեպտ. երկրորդ ուղղուի՝ չորրորդ։ Կրնայ մտածուիլ, թէ բանգէտ մը համարելով այս «սեպտ. Դ.» ընթերցուածը Աղեքսանդրեան տոմարին համեմատ, վերածած ըլլայ ասորա–բիւզանդական սեպտ. Բ.ի։ Իսկ «Թովթ Է» կրնայ մեկնուիլ միայն այն մտածմամբ, որ Տիմոթէոս նկատի առած է իր ժամանակի Թովթ տարեգլուխը, որ կը սկսէր աւգ. 29ին։

Յամենայն դէպս Հակաճառութեան այս տեղիքը որ եւ է նպաստ չի կրնար մատու–

*ցանել թարգմանութեան ժամանակը ճշդելու համար:*

*Յունարան Դպրոցի ծրագրէն դուրս էր Տիմոթէոսի Հակաճառութեան թարգմանութիւնը: Եւ եթէ թարգմանեց այդ Դպրոցը Հակաճառութիւնը, պէտք է ենթադրենք, թէ ան բարձրագոյն տեղէ պատուէր ընդունած է առ այդ:* 592—604 *տարիներուն բանակցութիւններ կը կատարուէին Հայոց եւ Յունաց մէջ, տեղի կ'ունենային ժողովներ. Մովսէս Եղիվարդեցին էր Հայոց կաթողիկոսը եւ իր նուիրակը՝ Վրթանէս Քերթող, որ կաթողիկոսի մահէն ետքը Տեղապահ ալ եղաւ* (604—609)*: Վրթանէս, որ կը մասնակցէր այդ ժողովներուն պաշտպանելու հայ եկեղեցւոյ տեսակէտները, չունէր իր ձեռքին տակ գրաւոր աղբիւրներ, ջատագովելու համար մի բնութեան վարդապետութիւնը ընդդէմ Քաղկեդոնականներուն: Լսեց Տիմոթէոսի Հակաճառութեան մասին եւ առաջարկեց Յունարան Դպրոցին թարգմանել զայն օր յառաջ: Ան կը ստանար այդ թարգմանութիւնը մաս առ մաս.* 606*ին ունէր զայն ամբողջութեամբ (հմմտ. իմ Դասական հայերէնը, էջ* 96)*:*

*Այս առաջին արտադրութիւնն է Յունարան Դպրոցին որ կը յիշուի հրապարակի վրայ* 606*ին, թէ եւ առաջին թարգմանութիւնը չէ: Ուշադրութեան արժանի է Ագուանից Պատմութեան Բ.* 48 *գլխոյն մէջ*

ներս առնուած (հաւանաբար Վրթանէս Քերթողի) տողերս. «Թէպէտ Թագաւորական հրամանաւ (592—597 տարիներուն Կ. Պոլիս եւ Կարին տեղի ունեցած ժողովներու մէջ) յարակիրթ ճարտարքն Յունաց վստահանային ի սուր լեզուս հելլենական յորդաբանութեամբ յաղթող լինել, սակայն ընդ նմին եւ զպատասխանիս լսէին. քանզի նորոգեալ էին ի հայաստանն եկեղեցիս ուսմունք. եւ էին յոյն լեզուին տեղեկագոյնք»։

## 5. ԴԱՒԻԹ ՓԻԼԻՍՈՓԱՅ

Այն պարագան, որ Արիստոտէլի մեկնիչ Դաւիթ Նորպղատոնական իմաստասէրը յոյն բնագիրներու մէջ ներկայացուած է անհայր, անտոհմիկ, լոկ ἀπὸ φωνῆς Δαβίδ, առիթ ընծայեց բանասէրներու, փորձեր ընել նոյնացնելու այդ Դաւիթը Զ—է դարու համանուն անձնաւորութիւններու հետ. V. Rose համարեցաւ թէ ան Դաւիթ Թեսաղոնիկեցին է. ուրիշներ ուզեցին նոյնացնել Դաւիթ Նիկետասի հետ, որ սակայն ըստ ամենայն հաւանականութեան նոյնանուն Պափլագոնացին է ծաղկած Թ. դարուն։ Եղան գիտուններ ալ, որոնք ազդուած հայ աւանդութենէն՝ ճանչցան զինքը հայազգի։ Բայց այս ըմբռնման խախտող ըլլալը ապացուցուց Խոստիկեան։ Ուստի կը մնայ հաստատուն այն իրողութիւնը թէ Դաւիթ Նորպղատոնական իմաստասէր էր, աշակերտ

*Ողոմպիոդորոսի եւ աշակերտակից Եղիասի: Իսկ Ողոմպիոդորոս աշակերտն է Հերմիասի որդւոյն՝ Ամմոնիոսի, որ Ե. դարու վերջը եւ Զ. դարու սկիզբը ծաղկած Աղեքսանդրեան Դպրոցի հեղինակաւոր իմաստաէրն էր:*

*Ողիմպիոդորի աշակերտներէն Եղիաս եւ Դաւիթ, ինչպէս անուններր ցոյց կու տան, ընդունած էին քրիստոնէութիւնը եւ կը դասախօսէին անվրդով Զ. դարու վերջերն եւ Է. դարու սկիզբները: Կը համարիմ թէ ասոնց աշակերտակից եղած են Ա. եւ Բ. խումբի մեր թարգմանիչները: Այսպէս մտածել կը թելադրէ այն իրողութիւնը, որ Արիստոտէլի գործերու համար առած են Յամբլիքոսի եւ Ամմոնիոսի Մեկնութիւնները, որոնք կը կիրարկուէին Աղեքսանդրեան Դպրոցի մէջ. իսկ Ս. Գրքի Մեկնութեան եւ Դաւանաբանական խնդրոց լուծման համար Փիլոն Աղեքսանդրացւոյ, Տիմոթէոս Աղեքսանդրիոյի եպիսկոպոսի եւ Իրենէոսի գրուածքները թարգմանեցին:*

*Գ. խումբի ներկայացուցիչն է Դաւիթ Հարքացի, գործած 660—720 շրջանին, որ թարգմանած է Դաւիթ փիլիսոփայի դասախօսութիւնները, գրի առնուած անոր աշակերտներէն:*

*Ուստի կրնանք տալ պատկերս.*




## 6. ՀԱՅ ԱԻԱՆԴՈՒԹԻՒՆԸ ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐՈՒ ՇՈՒՐՋԸ

*Մեր խօսքը Յունաբան Դպրոցի Թարգմանիչներու մասին է. ուստի նկատի չենք առներ Ե. դարու Թարգմանիչները. Թէեւ Մովսէս Խորենացի Ե. դարու Թարգմանիչներու նուիրած է իր Պատմութեան* Գ. 61—62 *եւ* 67 *գլուխները, բայց այն լեզուն, զոր կիրարկած է այս գլուխներու մէջ, ցոյց կու տայ, թէ Յունաբան Դպրոցի Թարգմանիչները նկատի ունի: Կարեւոր են այս տեղիքները բացատրելու համար, թէ ինչպէս կազմուեցաւ հայ աւանդութիւնը յաջորդ դարերու մէջ:*

1. *Մովսէս Խորենացի,* Գ. 61 (*վերջին* 8—11 *տողերը, տպ. Տփղիս* 1913). *Սահակ եւ Մեսրոպ զբաղած են Ս. Գրքի Թարգմանութեան վերաքննութեամբ. «Բայց քանզի անդէտք էին մերումս արուեստի՝ ի բազում մասանց թերացեալ գործն գտանէր. վասն որոյ առեալ մեծին Սահակայ եւ Մեսրոպայ*

զմեզ առաքեցին յԱղեքսանդրիա, ի լեզու պանծալի, ի սորալ յօդանալ ճեմարանին վերարանութիւն» (տպ. վերարանութեան)։ Աշակերտները կը մեկնին եւ Եդեսիա—Երուսաղէմ գծով կը հասնին Աղեքսանդրիա «ուսանել զգօրութիւնս պէսպէս իմաստից ի Նորին Պղատոնէ, յիմն անեմ վարդապետէ, որում ոչ անարժան զոսայ աշակերտ, եւ ոչ անկատար վարժմամբ ի յանդ երեւալ արուեստից՝ ինքնացոյ»։

Ուսմանց ընթացքն աւարտելով Հռոմ-Աթէնք («սակաւ ինչ մնացաք յԱթէնս») ճանապարհով ցամաք կ'ելլեն ի Բիւզանդիոն, անկէ հայրենիք վերադառնալու համար (չարունակութիւնը՝ գլ. 68)։ Երբ կը հասնին Հայաստան՝ վախճանած կը գտնեն Սահակն ու Մաշտոցը։

Ոչ աշակերտակիցներու եւ ոչ ուսուցիչներու անունները եւ ոչ ալ ուսմանց ընթացքին եւ տեւողութեան մասին տեղեկութիւն հաղորդած է Մովսէս. լռած է նաեւ թարգմանութեանց մասին։

Ինչպէս այլուր ըսած եմ, այս 61, 62 եւ 68 գլուխները եկամուտ են Մ. Խորենացւոյ Պատմութեան մէջ (Մատենագրական հետազօտութիւններ, հատոր Գ., էջ 179)։

Մ. Խորենացի, Ա. 7. կը յիշէ Ողիմպիոդորոս եւ Դաւիթ անունները. ինձ կը թուի թէ առնք են կրտսեր Ողիմպիոդորոս եւ անոր աշակերտն Դաւիթ։ Այս տեղիքն է.

«Յաղագս Ողիմպիոդորայ փիլիսոփայի անգիր հին զրուցացն: Բայց պարտ է մեզ զոմանց անգիր հին զրոյցս, որ պատմեալ եղեն վաղ ուրեմն ի մէջ իմաստնոցն Յունաց — եւ հասին մինչեւ ի մեզ այս զրոյցք ի Գորդի եւ ի Բանան անուն կոչեցելոց, եւս երրորդ ումն Դաւիթ — թէպէտ եւ յոյժ սակաւուք՝ երկրորդել: Յորոց մի ումն ի նոցանէ վարժեալ փիլիսոփայութեամբ, ասէր այսպէս, թէ Ով ծերք, յորժամ էի ի մէջ Յունաց զիմաստութիւն վարժելով, դէպ եղեւ ի միում աւուր՝ զի վասն աշխարհագրութեանց եւ բաժանմանց ազգաց ի մէջ արանց իմաստնոց եւ հմտագունից բան ճառիւր, ոմանք այլազգաբար եւ ոմանք այլաբանաբար զրոյցս մատենից տային. իսկ որ կատարելագոյնն էր ի նոսա, Ողիմպիոդորոս անուն, այսպէս ասաց. Պատմեցից ձեզ, ասէ, եւ զրոյցս անգիրս յաւանդութենէ ի մեզ հասեալ, զորս եւ բազումք ի գեղջկաց զրուցեն մինչեւ ցայժմ: Մատեան լեալ զՔսիսութրեայ եւ զորդւոց նորա, որ այժմ ոչ ուրեք երեւի[1]. յորում, ասեն, կարգ լեալ բանից այսպիսի. Յետ նաւելոյ Քսիսութրեայ ի Հայս...» (Հմմտ. Նաեւ Բ. 74):

Առաջին պարբերութիւնը թէեւ քերականական անճշդութիւններ ցոյց կու տայ,

---

[1] Հմմտ. Ա. 5. Եւ զայս մեզ Արիստակէս յիշում առաջնում արձանականի ի մանր ազգաբանութեան ասէ, զոր աստ ուրեմն յետոյ ոմանք բարձին:

բայց շեշտով մը կը յիշէ Դաւիթ անունը, որուն «փիլիսոփայ» յորջորջանքը երկրորդ պարբերութեան մէջ ակնարկուած է, միանգամայն մատնանիշ ընելով, որ ան իր կըրթութիւնը առած է «ի մէջ Յունաց», Աթէ՞նք, թէ Աղեքսանդրիա: Սա իր ժամանակի իմաստասէրներու «կատարելագոյնը» կը համարի Ողիմպիոդորը. եւ մենք գիտենք որ Դաւիթ Ողիմպիոդորոսի աշակերտն է, որ իր ուսուցչին անունը յիշած է Սահմանաց գրքի հայ թարգմանութեան մէջ երկիցս եւ յոյն բնագրին մէջ բազմիցս:

Այս Ողիմպիոդորը եւ Դաւիթը կը յիշէր նաեւ Գրիգոր Մագիստրոս (որ իր պատանեկական տարիքէն արդէն ծանօթ էր Արիստոտէլի, Պորփիւրի, Դաւթի Սահմանաց գրոց հեղինակի գործերուն. «Քանզի տրամադրութիւնքս այս վաղ ուրեմն պատահեաց մեզ մինչ տակաւին պատանեակ եղելոյ» Թուղթ ԽԵ. 106), երբ ձեռք բերած է «զգիրս Ողիմպիոդորոսի», «ի հայ լեզու գրեալ թարգմանչացն», կը գրէ. «զոր Դաւիթ յիշատակէ» (անդ, 66), Սահմանաց գրքի մէջ:

Յունաբան Դպրոցի թարգմանիչներու մասին Զ.—Թ. դարու մատենագիրները որ եւ է տեղեկութիւն չեն հաղորդած: Ժ. դարուն յանկարծ երեւան կու գան նորանշան անուններ, որոնք իբրեւ թարգմանիչներ, փիլիսոփաներ եւ պատմիչներ կը պանծացուին:

Ասոնց թուի մէջ են Մովսէս, Մամբրէ, Դաւիթ, Պաւղոս, Թէոդորոս, ասոնց կից Աբրահամ, Եղնիկ, Արձան, Կորիւն, Եղիշէ եւ այլն եւ այլն: Այս թարգմանիչներու թիւը ԺԳ. դարէն ետքը բարձրացած է 60ի. որոնք յառաջացած են «յաշակերտութենէ Ղեւոնդ քահանայի»:

Այս անուններէն երեքը առաջին անգամ յիշատակուած են Թովմաս Արծրունիէն իբրեւ պատմագիրներ: Թովմաս կը գրէ (էջ 44, Պատկանեան)․

«Իսկ առ մեզ հասին գրոյցքս այս (զհնագոյն պատմութեանց) ըստ մնացորդաց պատմագրացն առաջնոց ի Մամբրէէ վերծանողէ եւ ի նորուն եղբօրէ Մովսէս կոչեցելոյ եւ միւսումն Թէոդորոս Քերթող, որք լեալ էին յաշակերտութենէ Ղեւոնդ քահանայի, որ ի Պարսան մարտիրոսացաւ ընդ այլ սուրբ եպիսկոպոսն եւ քահանայս: Սոքա հրամանաւ Վահանայ Արծրունւոյ փոյթ յանձին կալեալ՝ խուզել քննել կարգել ի համառօտ բանս զանձմունս ազգացն անցելոց՝ ոչ կարի ինչ ընդ երկարագոյնս աշխատասիրաբար անցանել պատմութիւնս»:

Մամբրէի անունը ծանօթ եղած է նաեւ Ստեփանոս Ասողնիկի, որ իր Պատմութեան մէջ (էջ 80—81, Մալխասեան) կ'արձանագրէ․ «Յայսմ ժամանակի (յաւուրս մարզպանութեան Վահանայ, 485—500) Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երրորդ գտեալ

ի փիլիսոփայս՝ դառնայր ի Հայս, եւ Դաւիթ աշակերտ Մովսէսի ի Հարք գաւառէ ի Հերան գեղջէ»: Անշուշտ առաջինն էր Մովսէս եւ երկրորդը Դաւիթ[2]: Ասողնիկի աղբիւրը, ուսկից առած է տեղիքս, ինծ անծանօթ է: Ինչ որ կը հայի Դաւթի, առնուած է Բարձրացուցէքի Նախադրութենէն (տե՛ս վարը):

Ի մասին Մամբրէի եղբօր Մովսէսի երկուքն ալ ժամանակը ցոյց կու տան Ե. դարու Բ. կէսը:

Այս պարագային Մովսէս պէտք է նոյն ըլլայ Ղազար Փարպեցւոյ Թուղթին մէջ յիշուած Մովսէս փիլիսոփայ եպիսկոպոսի հետ: Բայց Թէոդորոսի յիշատակութիւնը կը հարկադրէ նկատի առնել Մովսէս քերդողն, «արարողն Պիտոյից տառի», որուն աշակերտն էր Թէոդորոս, ինչպէս կ՛ըսուի Պիտոյից գրքի վերջաբանութեան մէջ (Մատենագրութիւնք Մ. Խորենացւոյ, Վենետիկ 1865, էջ 580—581), ուստի առ կանուխ Է. դարու երկրորդ կէսին: Այս շրջանին կը ծաղկէին Դաւիթ Հարքացի եւ Թէոդորոս Դագոն:

Շատ կասկածելի է անունս «Մամբրէ եղբայր Մովսէսի», զոր Թովմաս «վերծանող» կ՛անուանէ. Խակաց գիրքը կը յիշէ նաեւ «Մամբրէ եպիսկոպոս Կորնթոսի», որ վիճաբանած է Դաւիթ Անյաղթի հետ ի Կ. Պոլիս:

---

[2] Այս տեղ նկատի առնուած է կամ τριτοστάτης (խումբի մը պարագլուխէն ետքը երրորդ արժանաւորը) եւ կամ τρισμέγισος «եռամեծ» տիտղոսը:

7· ԳԻՐՔ ԷԱԿԱՑ

Ժ. դարու սկիզբը պէտք է յօրինուած ըլլայ այն անվաւերական եւ վիպախառն գրութիւնը, որ ձեռագիրներու մէջ պէսպէս խորագիրներու տակ եւ ընդարձակ եւ համառօտ բովանդակութեամբ երեւան կու գայ, մեծաւ մասամբ նորագոյն ԺԶ.—ԺԸ. դարերու գրչութեամբ, որոնց համաձայն եւ տպագրուած է քանիցս[3]: Մ. էմին, Վարդան պատմիչի Պատմութեան ռուսերէն թարգմանութեան ծանօթագրութեանց կարգին խօսած է այս գրութեան վրայ ալ, յեցած իրեն սեպհական ձեռագրի մը վրայ (Մոսկուա 1861, էջ 88—89): Էմին գրութիւնս Ե. դարուն գրուած կը համարի[4]:

Գրուածքիս բովանդակութիւնն է.

ա. Սահակ եւ Մեսրոպ կ'առաքեն Մովսէս եւ Դաւիթ եւ այլ աշակերտներ Յունաստան ուսանելու յԱթէնս: Յունաց կայսրն է Թէոդոս Ա. (379—395) եւ Բ. (408—450), երկուքը մէկ համարուած: Կայսրը սիրով կ'ընդունի զանոնք. կը կարգէ Հայրապետանոցի դատաւոր. ապա կ'ուղարկէ Կարնոյ

[3] Տես վերագոյն, աղբիւրներու շարքին:

[4] Всеобщая исторія Вардана великаго. Перевелъ Н. Эминъ. Москва 1861. Примѣчаня էջ 89. «Այս գրուածքի լեզուն ցոյց կու տայ, որ հեղինակը ուշ ժամանակէ չէ. այնպէս որ մենք պատրաստ ենք դնել զայն Ե. դարուն եւ ընծայել եթէ ոչ Դաւիթ փիլիսոփայի կամ Մովսէս Խորենացւոյ, գոնէ անոնց ընկերներէն մէկուն: Մի օր կը հրատարակենք զայն պատշաճ լուսաբանութիւններով»: Այդ հրատարակութիւնը լոյս չտեսաւ:

*քաղաքը վերածելու համար դայն բերդաքաղաքի (Թէոդուպոլիս)։ Մովսէս եւ Դաւիթ ի գլուխ կը հանեն չինութիւնը եւ կը վերադառնան Կ. Պոլիս. կայսրը թոյլ կու տայ անոնց, որ երթան Աթէնք ուսանելու. «Խաղային գնային ի փիլիսոփայական քաղաքն Դաւիթ եւ Մովսէս, Մամբրէ եւ Պօղոս եւ Աբրահամ» (էջ 19)։ Նոյն տարիներուն կը հանդիպին հոն Գրիգոր Նազիանզացի, Բարսեղ Կեսարացի եւ Գրիգոր Նիւսացի (350), հետեւելու իմաստասիրութեան. 7 տարուայ մէջ կ՚աւարտեն իրենց դասընթացքն եւ կը վերադառնան։ Դաւիթ եւ Մովսէս կը մնան հոն մինչեւ Կապադովկացիներու եւ Թէոդոս Ա.ի, եւ Բ.ի մահը (ուստի իրր 451). 30 տարի ետքը կը վերադառնան Կ. Պոլիս, անկէ հայրենիք անցնելու համար. ալեւորած էին երկուքն ալ. այս տարւոյն կայսրն էր Մարկիանոս (452)։*

*Հայ փիլիսոփաները կը պարսաւեն կայսրը Քաղկեդոնի ժողովին համար, որուն վարդապետութիւնը ձախող կը համարին։ Յառաջ կը բերուին Քաղկեդոնի ժողովին Պատճառն եւ Լեւոնի Տոմարին ԺԳ. գլուխները։ Կը պահանջեն նոր ժողով։ Կայսրը իր պալատին մէջ կը հրաւիրէ եպիսկոպոսներ վիճելու համար հայ փիլիսոփաներու հետ. երկու կողմերն են.*

| | |
|---|---|
| *Յոբնաղ* | *Մովսէս* |
| *Յոբնաղ* | *Դաւիթ* |

Դրան երէց Թաղուհւոյ Դաւիթ
Մամբրէ եպ. Կորնթոսի Դաւիթ
Մելիտէս մետրապոլիտ
Մակեդոնացւոց Մովսէս

351 հարցումներ կ'ուղղուին, որոնց պատասխանը կու տան Մովսէս եւ Դաւիթ, միշտ յաղթական :

Վիճաբանութենէս ետքը Մովսէս եւ Դաւիթ «սկսան ի թարգմանութիւնս գրոց անդադար, ոչինչ համարելով տկարութիւն, այլ ի բաց եղեալ զծերութիւնն» (էջ 203) :

Ս. Խաչի տօնին կը խնդրէ Կայսրը Դաւիթէն, «զի խօսեսցի զբանս ինչ»: Դաւիթ կը խօսի այս առթիւ «Բարձրացուցէք» ճառը (204—260): Երբ ամպիոնէն կ'իջնայ Դաւիթ «առհասարակ ժողովն գովէին եւ բարեբանէին զԴաւիթ եւ ձայնէին Անյաղթ փիլիսոփայ» :

«Յայսմ ժամանակի կամեցան ելանել յաշխարհն Հայոց հանդերձ թարգմանեալ գրենօքն» : Թագաւորը կու տայ անոնց «պարգեւս երեւելիս եւ մասն ի սրբոյ Խաչէն» (էջ 262, տպ. Նոր-Ջուղա) :

Մովսէս եւ Դաւիթ կը հասնին Հայաստան: Կը ներբողուի անոնց մուտքը հայրենիք (էջ 262—264): Հայրենադարձք «տեսանելով աւերեալ եւ քակտեալ զվայելուչ աշխարհն իւրեանց... լային լալով եւ նստէին միրաւոր...»: «Մովսէս ծածկէր զինքն կար–

կատուն զգեստով... գնացեալ ի գեօղ մի Քաղաքուղաչտին...»: «Իսկ Դաւիթ յայտնի կացեալ յաչխարհին Հայոց»: «Իսկ Դաւիթ, Մամբրէ եւ Պօղոս եւ Աբրահամ ընկերք Մովսէսի կային յԱրեւանի: Եւ էր ի ժամանակին յայնմիկ կաթուղիկոսն Հայոց տէր Գիւտ, աչակերտակից Մովսէսի»:

Մովսէս կը յայտնուի Գիւտ կաթողիկոս կը ձեռնադրէ զանիկա եպիսկոպոս: «Խնդրեցին ի Մովսիսէ գրով տալ նոցա զՊատմութիւնն Հայոց...: Եւ Դաւիթ՝ գրեաց զՍահմանաց գիրսն, զոր էր առեալ ի փիլիսոփայիցն. արար եւ զՄեկնութիւն Քերականին...» (էջ 271—272):

Կ՚աւարտի Գուրգէն Հայոց մեծաց քարտուղարի համառօտուած յիշատակարանով:

Գրուածքիս անանուն հեղինակը ունի իր ձեռքին տակ Մ. Խորենացւոյ Պատմութիւնը: Աչակերտաց առաքումը կ՚ենթադրէ Գ. 61 գլուխը. Կարնոյ (Թէոդուպոլսի) չինութեան համար՝ Գ. 59. նաեւ անձամբ ականատես եղած է քաղաքին հին չինուածքներու, որոնք ըստ մեծի մասին Անաստաս կայսեր օրով, ուստի Զ. դարու սկիզբը կառուցուած են: Հեղինակը փոխանակ Աղեքսանդրիայի՝ Աթէնք ուղարկած է աչակերտները, որպէս զի զանոնք հանդիպցնէ — առանց ժամանակագրութեան նայելու — Գրիգոր Նազիանզացւոյ եւ Բարսղի, նաեւ Գրիգոր Նիւսացւոյ. որուն համար աղբիւր ունեցած է Նա–

զինդացւոյ ճառն ի Բարսեղ Կեսարացի[5]: Բարսեղ Աթէնք հասած էր 350ին. իրմէ յառաջ Գրիգոր Նազիանզացի: Իսկ Նիւսացին առած էր իր ուսումը առ ոտս իր եղբօր, Բարսղի:

Մովսէս եւ Դաւիթ 30 տարի կը դեգերին Աթէնք. բայց թէ ինչո՞վ զբաղած են անոնք, այս մասին որ եւ է խօսք չէ ըրած հեղինակը:

Հետաքրքրական է աւանդութիւնը, զոր լսած է Վանական վարդապետ. «Նախանձ ի վաղուց հետէ կայր ընդ ազգս (այս ինքն ի մէջ Յունաց եւ Հայոց). եւ յայտնի ի Բարսղի յԱրձանականէն է (զոր գրեաց Գր. Նազիանզացի). եւ պատճառ զայս իմացաք. որ սահմանակից է նոցա աշխարհն Հայոց՝ եւ արութեամբ աւելի, եւ շատ ինչ յիշատակ քաջութեան գրով ունին. եւ քան զայլ ազգս լեզուով սեպհական, եւ յար յուսմունս նոցա փութով ծանօթանալ լինէր. խծբիծ ինչ իմացեալ ի վարս վարդապետին իւրեանց՝ յերեսն հանին. նա յառաջ եռ նկարել զպատկերս նոցա. եւ ապա յարոյց զքաղաքն ի վերայ նոցա. եւ հանին զնոսա արտաքս: Նոքա երթեալ ի Միջագետս Ասորւոց՝ ուսան գիր եւ լեզու, յամեալք անդ մինչեւ ի գալ հաւատարել հերացն եւ մօրուաց. ապա ամե–

---

[5] Ճառ ԽԳ Գր. Նազիանզացւոյ. Հայ. թարգմ. «Ցաղթեցայ» ճառախումբին մէջ ճառ Ը. (Վիեննա, 217., թղ. 135ա—150ա): Համտ. Զամչեան, Ա., էջ 776:

նեւին տարի ձեւացեալ՝ մտին անդրէն յԱթէնս. զոր իմացեալ՝ հանին վերստին, օրէնս եդեալ, հայի մի՛ ումեք մտանել անդ: Եւ գի նախանձ եւ հեռ ուր մտանէ՝ քակէ, աւերեալ բարձաւ անդ ուսումն եւ արուեստ» (Հարցմունք եւ Պատասխանիք Վանական վարդապետի. յառաջ բերուած Զամչեան, Պատմութիւն, Ա., էջ 776):

Երկու աւանդութիւններ, որոնք խնամութիւն ունին իրարու հետ: Յամենայն դէպս հայ փիլիսոփաները կը վերադառնան Կ. Պոլիս ալեհեր, իրր 452ին 30 տարի ետքը, ուստի մեկնած էին Վաղարշապատէն, 422ին, չհաշուելով այն տարիները, զորոնք անցուցած էին Կարին:

Զարմանալի է որ այս 30 տարիներու մէջ որ եւ է հաղորդակցութիւն չեն ունեցած մեր փիլիսոփաները մայր հայրենիքի հետ. եւ առաջին անգամ Կ. Պոլիս կը լսեն Ս. Սահակի եւ Մեսրոպի մահը, Վարդանանց նահատակութիւնն եւ այլն (էջ 52): Բայց հետեւած են անոնք Քաղկեդոնի ժողովին շուրջը յուզուած վէճերուն, եւ Կ. Պոլիս կու գան իրենց հեղինակութեամբ վերջ տալու ամէն վէճերու: Անոնք մի բնութեան վարդապետութեան պաշտպաններ են, հակառակ Քաղկեդոնական Երկաբնակներու: Հեղինակը 450—454 տարիներու եկեղեցապատմական դէպերու համար իրեն աղբիւր ունի 981ին Դաւիթ քահանայի կազմած ժա—

ժամանակագրութիւնը, զոր հրատարակած են Հ. Բ. Սարգիսեան, Անանուն ժամանակագրութիւն, Վենետիկ 1904 եւ Ա. Աբրահամեան, Անանիա Շիրակացւոյ Մատենագրութիւնք, Երեւան 1943, էջ 357—399:

Ասկէ բանաքաղութիւններ են էջ 28, 30—34, 42—48 = 61—65· Սարգիսեան: Իսկ Լեւոնի Տոմարին 14 գլուխները (էջ 34—43) հանուած են Տիմոթէոս Կուզի Հակաճառութենէն: Ան ծանօթ է Ս. Սահակի տեսիլքին (28) եւ Եղիշէի «Ս. Մեսրոպայ աշակերտին» Պատմութեան (խմբագրուած բնագրով· էջ 32): Երեք հարիւր յիսուն եւ մէկ հարցմունք եւ պատասխանիք հեղինակի խելապատակի ծնունդներն են: Փիլիսոփայական հարցումներն եւ պատասխանիքը, ինչպէս ցոյց տուաւ Մ. Խոստիկեան, David, 17—18, ըստ մեծի մասին հանուած են Դաւթի Սահմանաց գրքէն եւ Արիստոտէլի եւ Պորփիւրի մեկնիչներու գրութիւններէն: Իսկ Դաւթի ներբողեանն ի Ս. Խաչ (Բարձրացուցէքն) կը պատկանի Դաւիթ Հարքացւոյ, որուն մասին պիտի խօսիմ քիչ յետոյ: Այն տեղիքը, ուր կ՚ըսուի թէ Մարկիանոս Ս. Խաչի մաս մը կը նուիրէ Դաւթի, ապացոյց կ՚ընծայէ թէ հեղինակը 630էն ետքն է:

Գրուածքիս հեղինակը երկիցս կը յիշէ Մովսէսի եւ Դաւթի աշակերտակիցները՝ «Մամբրէ, Պաւղոս եւ Աբրահամ» (էջ 19 եւ 265)· բայց անոնց գործունէութեան մասին

որ եւ է տեղեկութիւն չէ հաղորդած ։ Պաւղոս տանց տարակուսի համանուն աստղագէտ Աղեքսանդրացին է, որ գրած է «Նախերգան ի Ներքածութենէ» (Հրտ. Մատենագրութիւնք Անանիա Շիրակացւոյ, էջ 327—334. յոյն բնագրի մասին W. von Christs Geschichte der griechischen Literatur, II, 2, München 1913, էջ 877 ։

Գրութեանս կատարածին զետեղուած է յիշատակարան մը (եւ յիշատակագրութիւն մը), զոր ձեռագիրներէն ոմանք ձգած են համառօտել. լաւագոյն ընթերցուածը պահած է Սրուանձտեանի օրինակը.

«Եւ յետ բազում ժամանակաց գրեաց զգիրս զայս, իբրեւ Աստուած հասոյց զմեզ ի ժամանակս այս, յորում Հ. եւ Զ. էր թուականն Հայոց ։ Ես (տպ. եւ) Գուրգէն քարտուղարս Հայոց մեծաց եւ սուրբ Թագաւորացն պատուսպաթար (Զ. պռոյ սպաթար, այլք պռտոյ սպաթար) ստացող եղէ գրոցս այսմ. բայց զարմանալի է ի նախկի յիշատակի գրոցս այսմիկ, եթէ՝

«Գրեցաւ գիրքս այս Էակքս հրամանաւ Թարգմանեալ ի Յունաց ի հայս տեառն Յովհաննիսի Հայոց կաթուղիկոսի Գարեգենեցւոյ ի Իէ (այլք ԻԵ) թուականին Հայոց ։ Վկայէ այսմիկ Սարգիս Արարացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբ» (Հնոց եւ Նորոց, էջ 87) ։

Ա. մասը Գուրգէնի յիշատակագրութիւնն է. Բ. մասը հին յիշատակարանը ։

Յիշատակարանին համաձայն Խակաց գիրքը թարգմանուած է Յովհաննէս Գաբեղենեցի կաթողիկոսի հրամանաւ, 576ին կամ 578ին. թարգմանութեան տեղը եւ թարգմանիչին անունը չեն յիշուած: Թէ ստուգիւ կաթողիկոսի հրամանով թարգմանուած է այն, կը վկայէ Սարգիս Արարացի եպիսկոպոս:

Յովհաննէս կաթողիկոս գահ բարձրացած էր 558ին իբրեւ յաջորդ Ներսէս Աշտարակեցւոյ. վախճանած տարագրութեան մէջ ի Կ. Պոլիս, ըստ վկայութեան Յովհաննէս Սեբեստացւոյ (Ասիացւոյ) 574էն քիչ յետոյ:

Սարգիս Արարացի, այսպէս կոչուած «Արարաց վանք»է ըլլալուն համար, ապրած է Զ. դարու երկրորդ եւ երրորդ քառորդներուն, ուստի իբր 525—575 տարիներուն, շատաշրջիկ եպիսկոպոս մըն էր (հմմտ. Anton Baumstark, Geschichte der syrischen Literatur, Bonn 1922, էջ 184—185):

Թէպէտ ժամանակն եւ անունները մերձաւորապէս ճիշդ են. բայց դժուարութիւն կ'ընծայեն նախ «Իէ» եւ «ՀԶ» թուականներն Հայոց». այսքան վաղ «Հայոց թուական» գոյութիւն չունէր: Վիրոյ Աղուանից կաթողիկոս Հայոց ՀԲ (623) թուականը ցոյց տալու համար կ'արտայայտուէր «սկսեալ յառաջին ԺԸ. նահանջէն յայտնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի (ի ԺԸ) մեհեկի ամսոյն, ԼԵ. ամէն Խոսրովու Որ–

մրգդեան արքայից արքայի» (Մովս. Դասխուրանցի, Բ. 9)։

Դարձեալ խնդրական կը մնայ տակաւին թէ ի՞նչ գրութիւն էր «Խակաց գիրքը»։ Եթէ ան կը յարաբերէ այն «Հարցմունքն ու պատասխանիք», որոնք յառաջ բերուած են այս հատորին մէջ, ընդունելի չէ. վասն զի անոնք թարգմանութիւն չեն, այլ թարգմանուած գրքերէ քաղուածքներ։ Ես ենթադրած էի, թէ «Խակք» նոյն ըլլայ Եւտիքէս պատրարքի Յաղագս զանազանութեան բնութեան եւ առանձնաւորութեան գրուածքին հետ, որ հրապարակ ելած էր ի Կ. Պոլիս 577ին. որուն թարգմանութիւնն ունինք, կատարուած յունարան Դպրոցէն (Դասական Հայերէնը, էջ 113—119)։ Բայց անհաւանական կը գտնեմ այժմ այս ենթադրութիւնս, վասն զի շատ վաղ է ժամանակը Յունաբան Դպրոցի համար։ Յամենայն դէպս այս Յիշատակարանն որեւէ կապ չունի այն Խակաց գրքի հետ։ Կը կարծեմ, թէ գողունի ապրանք է այն, հանուած ձեռագրէ մը եւ զետեղուած հոս, Խակաց գրքի ժամանակը Զ. դարուն ցոյց տալու համար։

Կեղծիք է նաեւ 627ի յիշատակագրութիւնը։ Գուրգէն կը ներկայացնէ ինքզինքը «Քարտուղար Հայոց մեծաց», միաժամանակ «պրոտոսպաթար սուրբ թագաւորաց»։ Հոս «սուրբ թագաւորք» կ՝ենթադրէ Հերակղ Կայսր (610—641). բայց թէ ինչպէս այդ պրո-

*տոսպաթարը Հայոց մեծաց (Պարսկահայոց) քարտուղար կարող էր ըլլալ, անըմբռնելի է։*

*Մենք գիտենք որ πρωτοσπαθάριος տիտղոսը [ուշ ժամանակ ներս առնուած է] բիւզանդական արժանապատուութեանց մէջ, առաջին անգամ երեւան եկած 712ին, փոխ թղթերէն մէկուն մէջ իբրեւ ստորագրութիւն՝ θεοφίλῳ προτοσπαθαρίῳ։ Մ. Խոստիկեան* (David, 16) *կը համարի թէ այս տիտղոսը Կայսեր կողմէ Հայոց շնորհուած ըլլայ ուշ՝ Թ.—Ժ. դարուն։ Եւ արդեամբ կը յիշուի* 1000 *թուականէն (Հայունի, Պատմութիւն հայ տարազի, էջ* 172, *Գր. Մագիստրոս, էջ* 104, *Սմբատ,* 36. *Հմմտ. Աճառեան, Արմատ. Բառարան, ը. բ.)։*

*Πρωτοσπαθάριος բառը արմատն է լատիներէն* spatha *եւ յունարէն σπάθη, «երկսայրի սուր». անկէ կազմուած է σπαθάριος, սուսերակիր. «որպէս սուսերակիր թագաւորի կայ հանապազ պատրաստ առ նմա» (Վարք Հարանց. Ա. էջ* 635)*։ Սեբէոս ունի. «Սմբատ, որդի Վարազտիրոցի, «էր* առաջին սպաթար *ի մէջ ամենայն սպաթարացն (Կոստանդին կայսեր, իրր* 644) *եւ կանդի- դատ» (էջ* 114)*։ Հոս* առաջին սպաթար *պաշտօնի անուն է, իսկ* կանդիդատ *պատուանուն։ Անկէ ծագեցաւ ապա* պրոտոսպաթարիոս *պատուոյ աստիճանը, կը յիշուի Փիլիպպիկոս Վարդան կայսեր օրով* (711—713) *Ῥοῦφος, ὁ πρωτοσπαθάριος τοῦ ’Οφικίον*

(Ad. Bauer, Anonymi Chronographia syntomos. Lipsiae 1909, p. 65) · ծանօթութիւն արտատպութեան) ։

Այս նկատողութիւնները թոյլ կու տան մեզի գրութեանս ժամանակը մատնանշել 981էն ետքը եւ 1000էն յառաջ։ Այս շրջանի հանգամանքները կրնային գրգիռ տուած ըլլալ այսօրինակ գրուածքի մը հրատարակութեան։ Հեղինակը մոլեռանդ միաբնեայ է, բուռն ազգամոլ, սիրող իմաստասիրական գրականութեան, հմուտ գրագէտ, անհմուտ պատմութեան եւ ժամանակագրութեան։ Գրուածքս կարելի է նկատել փորձ մը թատերական գրականութեան։

Գրուածքիս ծանօթ են Բարձրացուցէքի Նախադրութեան հեղինակը, Վարդան Հաղբատացի, որ իբրեւ «ստայօդ» կը նշաւակէ զայն, Գրիգոր Արասու որդի, որ «անհաւատի» կ'որակէ, Վարդան Արեւելցի եւ այլք։

Վարդան յառաջ բերած է նաեւ տեղիքս. կը գրէ· «վասն զի գտանին այսպիսի բանք առ մեզ, թէ Դաւիթ խօսեցաւ յերկար ընդ Յուրնաղայ եւ ընդ Դրան երէցն Պողքերայ եւ ընդ Մամբրէ արքեպիսկոպոսն Կորնթացւոց եւ կարկեցան եւ յամօթ եղեն» · եւ այլն (էջ 54—55, տպ. Վենետիկ 1862)։ Վարդան կը յիշէ աշակերտներէն «զՄովսէս եւ զԴաւիթ եւ զԵղիշէ եւ զՄամբրէ զեղբայր Մովսիսի» (51)։

Մինչ էակաց գիրքս Մովսէսն եւ Դաւիթը Աթէնքէն Կ. Պոլիս եկած կը ներկայացնէր,

*Վարդան համարած է, թէ «Մովսէս եւ Մամբրէ եւ Դաւիթ եկեալ յուսմանէ՝ հոգայրն զտուն կաթողիկոսարանին: Եւ թուի թէ ի լինել ժողովոյն Քաղկեդոնի, վախճանեալ էր Գիւտ եւ չէր նստեալ Յոհան Մանդակունի. եւ բերեալ առ սոսա թուղթ դաւանութեան, ոչ ընկալան... այլ չոգան Մովսէս եւ Դաւիթ, թէ հնար իցէ օգնել ուղղափառութեանն» (էջ 54): Վարդան աչքի առաջ ունի նաեւ Բարձրացուցէքի Նախադրութիւնը:*

*Կիրակոս Գանձակեցի կը յիշէ միայն Դաւթի «Հարցմունս եւ Պատասխանիս». իսկ աշակերտներէն՝ Մովսէս քերթողն, Մամբրէ վերծանողն նորին եղբայր, Եզնակ եւ Կորիւն, սուրբ Եղիշէ, Դաւիթ անյաղթ փիլիսոփայ» (էջ 16): Ստեփանոս Օրբելեան այս թուին վրայ կ'աւելցնէ նաեւ Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսը (էջ 90 Ղուկ.):*

## 8. ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔԻ ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆԸ

*Նախադրութիւնս կը գտնուի Տօնապատճառներու մէջ իբրեւ պատճառ Դաւթի ի Ս. Խաչն ճառին, որ կը սկսի «Բարձրացուցէք զտէր Աստուած...»: Ունիմ աչքի առաջ Վենետիկի տպագրութիւնը, էջ 99—102:*

*«Դաւիթ փիլիսոփայ ասացեալ... (էր) ի Հարք գաւառէ ի Հերեթն գեղջէ. աշակերտ Սահակայ եւ Մեսրոպայ զոր ասեն քուերորդի Մովսեսի քերթողահօրն, ի վաթսնիցն, որք ընտրեցան... որք յետ 101 ամի սրբոյն*

Գրիգորի... չոգան յազգս՝ ուսանել իմաստութիւն եւ արուեստախօսութիւն եւ առնել թարգմանութիւն, յԱղեքսանդրիա եւ յԱթէնս եւ յայլ գաւառս: Եւ որք ընդ նմա գնացին՝ Մամբրէ եղբայր Մովսիսի, Մուշէ եւ Եղիշէ, Եզնակ եւ Արձան արծրունի եւ Աղան: Եւ ի դառնալն, զի բազում ժամանակք էին անցեալ եւ յոլով անցք անցեալ ընդ երկիրս... եւ բաժանումն հայրապետութեանն յերկուս. Յոհան Մանդակունի ի Պարսից կողման կաթողիկոս եւ Գիւտ ի կողմանս Յունաց՝ յաշակերտաց սրբոյ Քահանայիցն:

Յաւուրս վերադիտողութեան Հայոց Տեառն Գիւտայ եկին աբք ոմանք ի Նահանգէն Անտիոքայ ի գեղջէն որ կոչի Աւչին, որոց անուանքն Կոստանդին եւ Պետրոս եւ Թէոդորէ... որք ասէին ոչ գոլ զՄարիամ աստուածածին, եւ ոչ զԽաչն Աստուծոյ խաչ....:

Իբրեւ լուաւ Գիւտ զգալն Դաւթի եւ զընկերացն... գրեաց առ Դաւիթ նամակ, որ ունէր օրինակ զայս. Երկնաւորին ցանկացեալ մեծութեան...»: Կը խնդրէ «խօսել խորհրդով ի Խաչն Քրիստոսի»: Այս թղթոյն պատասխան կու տայ Դաւիթ. «Զառ ի յաստուածուստ պատուեալ զերից երջանիկ...»: Յանձն կ'առնէ Դաւիթ կաթողիկոսին խնդրանքը: «Եւ եղեւ այս ի ժամանակս մարզպանութեան եւ ստրատելութեան Վահանայ որդւոյ Մազնեսի (Մազ-

*նոսի) որդւոյ Վարդանայ, կամ որպէս ասեն՝ եղբօր: Փորձողք եւ գիտողք սուտ ասեն զայլ պատճառսն, յԱթէնս կամ ի Բիւզանդիա, կամ յԵրուսաղէմ, կամ յորժամ ի Պարսից դարձաւ խաչն եւ խօսեցաւ. իսկ այս առանց կարծեաց է»:*

*Մեզի անծանօթ է նաեւ այս գրութեան հեղինակը, որ, ինչպէս կ՚երեւայ ծանօթ է նախորդ աւանդութեան, ինչպէս եւ այլ նմաններու: Կարդացած է զայս Ստեփաննոս Ասողնիկ: Ասոր նման մը գտած է Վարդան Հաղբատացի. «յօրինակս հինս առ Թարգմանութիւնս գրեալ», այսինքն Բարձրացուցէք ճառին սկիզբը կամ վերջը զետեղուած: Կարեւոր կը համարիմ այս պատճառն ալ ներկայացնել այստեղ քաղուածաբար:*

## Ը. ՎԱՐԴԱՆ ՀԱՂԲԱՏԱՑԻՈՅ ՊԱՏՃԱՌ ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔԻ

*Վարդան Հաղբատացի, որ այցելած էր Հռոմկլայ իբր 1170ին եւ խնդրած Ներսէս կաթողիկոսէն Բարձրացուցէքի Մեկնութիւնը, վերադարձին գրած է Դաւթի այդ ճառին պատճառը եւ զետեղած Մեկնութեան սկիզբը: Այս Պատճառէն օգտուած է Դաւիթ Քոբայրեցի իր Պատճառին մէջ: Այս Պատճառը աչքի առաջ ունեցած է Գրիգոր Աբասի որդի իր Պատճառաց գիրքը յօրինելու ժամանակ:*

*Քոբայրեցւոյ գրութիւնը խորագիր կը*

գրէ. «Դաւթի փիլիսոփայի Ներբողեան ի սուրբ Խաչն Քրիստոսի ասացեալ եւ զՊատճառն առընթեր եղեալ Դաւթի քահանայի: — Յոլովս եւ զանազանս գտաք գրեալ Պատճառ Ներբողենիս անհաւաստիս, եթէ ո՞ւր եւ է՞ր աղագաւ եւ յորմէ՞ հարկաւորեալ գրեաց մեծիմաստն Դաւիթ փիլիսոփայ զ'ի սմա...: Բայց վարդապետն Վարդան այսպէս գրէ, թէ «Ձի պիտոյ է մեզ...» (Լումայ, 1900, Ա., էջ 252—253. եւ Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 543): Այս տեղ յառաջ կը բերեմ յանուն Ներսէս Շնորհալիի հրատարակուած Պատճառէն տեղիքս:

Սահակ եւ Մեսրոպ բացին դպրոցներ, հաւաքեցին աշակերտներ. «Յետ այսորիկ կատարմանց ուշ եղեալ երանելեացն առաքեն յաշակերտաց անտի ի կողմանս Յունաց յուսումն իմաստութեան, ի մայրաքաղաքն յԱթէնս. որք ուսեալք եւ տեղեկացեալք՝ թարգմանիչք եղեն հելլենական լեզուի:... Զոր ասացին ոմանք, եթէ օրէնք էր Աթենացւոցն, որք վարդապետք էին իմաստութեան, հոգ տանել աշակերտացն գեօթն ամ: Եւ յորժամ կատարեալ լինէր սահման կիտին եղելոյ, է'ր նշանաւոր ինչ տեղի կազմեալ. եւ որ վարդապետ էր՝ հրամայէր աշակերտին ելանել ի բարձր դիտանոց եւ խօսել բանս հանճարականս ըստ ժամանակին եւ ըստ պիտոյից լսողացն: Որով եւ նոյն ինքն երանելին Դաւիթ, մի յայնցանէ յաշակերտացն, հասեալ յատեան,

եւ եկաց ի վերայ աշտարակին՝ առաջի սրբոյ Նշանին: Զի յայն վայր կործանեալ կռոցն պատկեր՝ պատուականութիւն Խաչին յառաջանայր ի մէջ Աթենացւոցն: Ասեն թէ անդ ասաց յուրախութիւն լսողացն եւ ի պատիւ Խաչին: Իսկ այլք ասեն, թէ ի դառնալն յԱթենայ ի Կոստանդնուպօլիս, ըստ օրինացն յունականաց՝ ընկերակիցք նորա մեծարեցին զնա յաւուր տօնի Խաչվերացին. (եւ նա) ի պատուասիրութիւն տօնախմբութեանն է ասացեալ: Եւ այլք՝ թէ յԵրուսաղէմ, առաջի փրկական Խաչին սրբոյ: Եւ ոմանք թէ յետ դարձին ի Պարսից: Եւ կէսք, (թէ) ի տեղի ինչ անապատի գրեալ՝ ըստ հակադրութեան երկարնակաց ընդդիմաբանութեան:

«Բայց զի՞նչ այսպիսի ի ծուփ եւ ի խընդիր ծախել զժամանակ վարդապետութեան՝ ստայօդ պատմութեան:

«Այս գտի յօրինակս հինս՝ մերձ առ Թարգմանութիւնս գրեալ, եթէ սա էր աշակերտեալ մեծին Մովսիսի քերթողին՝ աստուածեղէն գրոց, ի Հարք գաւառէ, ի Հերեթն գեղջէ, որդի առն բարեպաշտի եւ սիրողի Աստուծոյ, մի յայնցանէ, որ միաբան ընտրեցան յաշակերտութիւն հելլենական դպրութեանն, ի ժամանակս Վահանայ որդւոյ Մագնոսի, որդւոյ Վարդանայ. եւ ի հայրապետութեանն տեառն Գիւտի եւ զկնի Յոհանայ Մանդակունւոյ:

«Իսկ երանելին Դաւիթ, զոր ծանուցաք զպատճառն, հարկաւորեալ ի սուրբ Հայրապետէն յաղագս երկարնակաց լեզուագարութեանն, որով չարք ոմանք ի Նեստորականաց աղանդոյն ի Քաղկեդոնի ժողովոյն եկին ի Հայս՝ թիւրելով զճշմարտութիւն հաւատոյն, զպարզամիտսն եւ զախմարագոյնս յինքեանս ձգելով, ասելով մարդածին զաստուածածինն եւ զնչանն փրկական լոկ խաչ մարդոյ եւ ոչ Աստուծոյ: Վասն որոյ միջամուխ եղեալ սոյն այս այր սքանչելի ի ճառս արձանացուցանէ բանիւք՝ յասելն «ըստ որում Աստուածածին՝ ծնողն եւ նոյն ինքն ծնեալն՝ Աստուած անպարագրելի եւ անբաւ»: Եւ սակս խաչիս՝ «Աստուծոյ խաչ, ասելով, եւ ի սմանէ հաղորդելս համբուրի»: Յաղագս որոյ հարկեալ ի Հայրապետէն, որ մեծաւ ըղձիւք խնդրէր ի սրբոյն, տեսանելով զմեծանձնութիւն եւ զկորովութիւն բանիցն եւ զանյաղթ իմաստութիւն նորա, վստահացեալ յառն քաջութիւնն՝ ետ գրել հրամանաւ եւ սիրով, ի նչան պարծանաց կաթուղիկէ եկեղեցւոյ եւ ի զխպարանութիւն հակառակացն: Վասն որոյ ունէր ի սկզբան բանին այսպէս գրեալ. Զառ ի յաստուածուստ պատուեալ քահանայապետիդ ի մեծանձնութենէ ընկալաք զհրաման․․․:

«Եւ ինձ բարւոք խորհողացն այսոքիկ բարւոք թուեցաւ պատճառք, քան այլոցն»

(Ծուաքաղ 1861/1862, էջ 38—39 եւ Վիեննա, Թ. 969, Թղ. 157—160. արտագրուած 1311ի օրինակէ մը 1690ին) :

## 10. ԳՐԻԳՈՐ ՈՐԴԻ ԱԲԱՍԱՅ, ՊԱՏՃԱՌ ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔԻ

Այս հարցով զբաղած է նաեւ Գրիգոր իր Պատճառաց գրքին մէջ. կ՚օգտուի Նախադրութենէն եւ «Ներսէս Կլայեցւոյ» Պատճառէն. յառաջ կը բերեմ տեղիքները. «Յոլովս եւ զանազանս գտաք գրեալ Պատճառս Ներբողենիս, անհաւաստիս, թէ ո՞ւր եւ է՞ր աղագաւ եւ յումէ՞ հարկաւորեալ գրեաց զսա մեծիմաստն Դաւիթ փիլիսոփայ: Զի ոմանք յԱթէնս ասացին ատենաբանեալ զսա եւ այլք ի Կոստանդնուպոլիս եւ կէսք յԵրուսաղէմ ի Գողգոթային յաւուր Խաչվերաց տօնին: Այլ ի ճշմարտատես արանց եւ ի քննող(աց) պատմութեան զժամանակն եւ զպատճառն այսպէս գտաք գրեալ...: Ս. Սահակ եւ Մեսրոպ ստացան աշակերտանոցս... եւ ապա զկատարելագոյնսն ի նոցանէ... առաքեցին յիմաստասիրութեան մայրաքաղաքն ի Բիւզանդիոն եւ յԱթէնս եւ յԱղեքսանդրիա, այլ եւ ի կողմանս Ասորւոց ուսանել... յորոց էր մի եւ առաջին Դաւիթ փիլիսոփայ համալծորդ Մովսիսի Խորենացւոյ եւ Գառնկայ եւ Եզնիկանն, Մամբրէի եւ Կորեան եւ այլոց յոլովից: Եւ ի ծերութեան հասեալ ժամանակ հարկաւորի ի սուրբ հայրապետէն Հայոց

*Գիւտայ եւ ի պատուտւորաց ժամանակին ներբողել, այսինքն գովել զխորհուրդ Խաչին. որ այժմ կատարի նովաւ մեծամեծ սքանչելիք: Եւ յայլոց ասի, թէ էր սա ի ժամանակս հայրապետին Հայոց Յովհաննու Մանդակունւոյ եւ Վահանայ որդւոյ Մանգնոսի, որդւոյ Վարդանայ: Այլ մեզ ստուգելի (ստուգագո՞յն) թուի ի Գիւտայ հայրապետութեան եղեալ խնդիրս:...*

*«Եւ էր մեծն Դաւիթ փիլիսոփայ ազգաւ ի Հարքայ, ի Հերթն գեղջէ, աշակերտ Մովսիսի քերթողի ի ժամանակս Վահանայ որդւոյ Մագնոսի որդւոյ Վարդանայ եւ ի ժամանակս Մանդակունւոյ: Եւ սկիզբն առնէ աւեւոյն այսպէս. Բարձրացուցէք...: Ասի յոմանց թէ վասն գերակատար իմաստութեանն կամեցաւ ինքնախօսութեամբ դնել սկիզբն եւ ոչ ուսուեք առնուլ վկայութիւն. եւ մինչ զայս ած զմտաւ, արգելաւ իմաստութիւնն եւ ոչ կարաց խօսել: Այլ ոչ է կարծել ի դէպ այս նմա...»* (*Վիեննա, Թ.* 47, *Թղ.* 326*բ*—328*ա*): *Հրտ. Ադոնց, Դիոն. էջ ԻԸ—ԼԲ*:

*Գրիգոր Արասու որդի Սահմանաց գրոց պատճառին մէջ կը գրէ. «Յորժամ գնաց մեծ եւ կատարեալ փիլիսոփայն Դաւիթ ի մայրաքաղաքն իմաստութեան յԱթէնս, եւ վարժեալ եղեւ ամենայն իմաստութեամբ, մինչեւ ընդ առաջին իմաստունսն համարել զնա: Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ բազում հակառակութիւն ի մէջ իմաստասիրացն վասն իմաստութեան... մեծս Դաւիթ*

յինքն առնել զամենայն հոգս իւրն՝ եղծ զամենայն հակառակութիւնս նոցա...: Եւ յոմանց առի գարձեալ, թէ ոչ յԱթէնս, այլ յորժամ եկն ի Հայք, ի ընիկ գաւառն իւր Հարք, յայնժամ եհաս համբաւս այս ի լսելիս նորա... եւ յայնժամ, ասեն, արար զգիրս զայս եւ առաքեաց առ նոսա... եւ արարեալ օրինակ՝ զայն թողու ի Հայոց աշխարհիս, որ է այս գիրք ի պէտս բանի սպասաւորաց:

«Եւ թէ ոք հարցանէ, թէ ի վերնագիրն գիւր անունն ընդէ՞ր ոչ է եդեալ, թէ նորա արարած է այս գիրք: (Պխ.) Վասն զի ոչ ունէին հպարտ ազգս Հայոց զիմաստս վարդապետաց իւրեանց, ոչ եդ զանունն, զի մի կորուսցեն. եւ կամ մի առնել պատուեսցեն այլք: Իսկ ի Բարձրացուցեացն սկիզբն յետոյ եդին զնորա անունն: Եւ Սահմանաց գիրս ոչ գրեալ եղեւ յայնժամ. եւ այլ յետոյ չարարին փոյթ դնել զանուն նորա:

«Ասաց սա չորս գիրք. Ա. զԲարձրացուցէքն. Բ. զՍահմանացն. Գ. զԲերականին մեկնիչն. Դ. զՊէտքն: Գոն եւ առանձինն այլ ճառեր: Արար Ե. եւ Սաղմոսին պատճառ. եւ զի ոչ գոյր փափագանօք խնդրող, վասն այն եւ նա ոչ արար գիրք, այլ զի մի նախատեսցի որպէս յառաջդ ասացաք. ապա թէ ոչ իմաստուն էր առնել քան զառնել» (Վիեննա, Թ. 47, Թղ. 328—329ր): Ադոնց, Դիոն. էջ ԼԲ—ԼԴ:

Մեզի ծանօթ չեն այն հեղինակները,

որոնք հաւաստած են, թէ Ներբողս խօսած է Դաւիթ Աթէնք կամ Երուսաղէմ կամ «յետ դարձին ի Պարսից», ուստի 630ին, կամ «ի տեղի ինչ անապատի գրեալ»։

Կ. Պոլիս, Ս. Խաչի տօնին ատենաբանած ըլլալը առանց տարակուսի աղբիւր կ՚ենթադրէ Հակաց գիրքը (Ժ. դար)․ ուստի Նախադրութիւնս ալ պէտք է գրուած կամ խմբագրուած ըլլայ այս շրջանին, յամենայն դէպս 1004էն յառաջ, վասն զի Ս. Ասողնիկ ծանօթ է անոր։

Առաջին անգամ ա՛յս տեղ կը լսենք, թէ Ներբողին հեղինակն է Դաւիթ փիլիսոփայ, հայրենեօք «ի Հարք գաւառէ ի Հերեթն (Հերթն, Հերեան) գեղջէ», աշակերտ Մովսէսի։ Ա՛յս աղբիւրէն առած է Ստեփանոս Ասողնիկ տողերս․ «Յայսմ ժամանակի (յաւուրս մարզպանութեան Վահանայ, ուստի 485էն ետքը) Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երրորդ գտեալ ի փիլիսոփայս, դառնայր ի Հայս, եւ Դաւիթ աշակերտ Մովսիսի ի Հարք գաւառէ ի Հերեան (կարդա՛ Հերթեն) գեղջէ։ Զայսու ժամանակաւ երանելին Յովհան Մանդակունի...» (էջ 80—81 Մալխասեան)։

Նախադրութեանս բնագիրը պէտք է վերակազմել Վարդան Հաղբատացւոյ օրինակէն, որ հին ձեռագիրներու վրայ յեցած է․ նոյնպիսի մը ունեցած է նաեւ Ստ. Ասողնիկ։

Ժամանակի մասին ժամանակագրական

կոուան տրուած է. «Եւ եղեւ այս ի ժամանակս մարզպանութեան եւ սպարապետութեան Վահանայ որդւոյ Մա[ն]գնոսի (տպ. Մագնեսի) որդւոյ Վարդանայ (Հաղբատացին կ'աւելցնէ) եւ ի հայրապետութեանն տեառն Գիւտի եւ զկնի՝ Յոհաննու Մանդակունւոյ»։

Մենք գիտենք Ղ. Փարպեցիէն, որ Վահան որդին էր Հմայեկի, եղբօր Վարդանայ։ Մագնոս (գրուած նաեւ Մանգնոս, լատ. Magnus եւ յն. Μαγνο:) որդի Վարդանայ անծանօթ է Ղ. Փարպեցւոյ, եւ առաջին անգամ այստեղ երեւան կու գայ։ Ասկէ առած է Ստ. Ասողնիկ. «Եւ առնու զսպարապետութիւնն Հայոց Մանգնոս որդի Վարդանայ, ամս Ի» (էջ 79)։ Ասողնիկէն փոխ առած են Մխիթար Անեցի, Սամուէլ (71) Կիրակոս (21), Մխիթար Այրիվանեցի (19) հմմտ. նաեւ Ջամչեան, Բ. 459. Ալիշան, Այրարատ, 561, Օրմանեան, Ազգապատում, 445)։ Այս խախուտ հողի վրայ պատմութիւն կարելի չէ շինել։ Հայ մատենագրութեան մէջ ծանօթ է մեզի «Անդրէաս եղբայր Մագնոսի եպիսկոպոսի», որ ծաղկած է Դ. դարուն. ունինք իրմէ «Խօսք Անդրէասի իմաստասիրի վասն Զատկաց» (Երեւան, Մատենադարան, Թ. 1999). կը յիշէ զինքը Դաւիթ քահանայ իր կազմած ժամանակագրութեան մէջ (Անանուն Ժամանակագրութիւն. հրտ. Սարգիսեան, էջ 53. Աբրահամեան, Մատենագրութիւնք Անանիա Շիրակացւոյ, էջ 387. հմմտ. նաեւ էջ 166—167 եւ 295)։

Նախադրութեան հեղինակը իր աղբիւրներու մէջ Գիւտ եւ Յովհաննէս կաթողիկոսներու անունները տեսնելով, վարանած է, թէ Դաւիթ Գիւտի՞ թէ Յովհաննու օրով վերադարձաւ եւ խօսեցաւ իր ներքողեանը: Եթէ Վահանի մարզպանութեան օրով եկաւ եւ խօսեցաւ, այդ ժամանակին Յոհանն էր կաթողիկոսը: Բայց թէ՛ հեղինակը եւ թէ՛ Վ. Հաղբատացի հաւանականագոյնը համարած են Գիւտի ժամանակը, մասնաւորապէս աչքի առաջ ունենալով Գիւտի հրաւէրի թուղթն առ Դաւիթ եւ Դաւթի առ Գիւտ յանձնառական թուղթը: Երկուքն ալ սակայն կեղծիք են:

Ուշադրութեան արժանի է, որ հեղինակը իր աղբիւրներու մէջ գտած երկու կաթողիկոսները իրարու հետ հաշտեցնելու համար ստեղծած է «Բաժանումն հայրապետութեանն յերկուս. Յոհան Մանդակունի ի Պարսից կողման կաթողիկոս եւ Գիւտ ի կողմանս Յունաց՝ յաշակերտաց սրբոց քահանայից»: Ե. դարու երկրորդ կէսին հայրապետական աթոռի նման բաժանում մը գոյութիւն չէ ունեցած. բայց տեղի ունեցած է նոյնը 592—610 տարիներուն, երբ Մովսէս Պարսից կողման եւ Յովհաննէս Յունաց կողման կաթողիկոսներ էին:

Եւ եթէ կ՚ըսուի թէ «յաւուրս վերադիտողութեան Հայոց տեառն Գիւտայ եկին արք ոմանք ի նահանգէն Անտիոքայ ի գեղջէ որ կոչի Աւշին, որոց անուանքն Կոստան–

դին եւ Պետրոս եւ Թէոդորէ… որք ասէին ոչ գոլ զՄարիամ աստուածածին եւ ոչ զխաչն Աստուծոյ խաչ, այլ գողոց պատժարան»· ասկէ պէտք է հետեւցնել, թէ հեղինակին ծանօթ էր, որ Թէոդորէ իր կցորդներով Դուին եկած էր 660/662ին (տես վարը էջ 88)։ Իսկ խաչամարտ էին Խուժիկ Նեստորականները, որոնք հալածուեցան 554ին Ներսէս Բ·ի օրով։

11· ՌՈՒԱՔԵԼ ՍԻՒՆԵՑԻ, ՊԱՏՃԱՌ ՍԱՀՄԱՆԱՑ ԳՐՈՑ

«Վասն Դաւթի…։ Ուստի՞ էր նա։ Այսինքն Ներգինացի կոչի· Ներգինեայ է գիւղն այն, ուր Անանիա Շիրակացին առաւօտու երգերն էր ասացեալ։ Եւ Դաւիթ յայսմ գեղջէ էր, որ է ի Տարօնոյ գաւառէն։

Յորմէ՞ ազգէ էր· այսինքն յայտ է, զի ազգաւ հայկազին էր։

Յորո՞ւմ ժամանակի էր· այսինքն յորժամ սուրբն Մեսրոպ եւ սուրբն Սահակ հայրապետն արարին գիր Հայոց, ընտրեցին մանկունս հանճարեղս հնգետասան եւ ետուն թարգմանել զամենայն գրեանս Յունաց ի մեր լեզուս· Յովսէփ, Ղեւոնդ, Յովհաննէս, Աբրահամ, Արձան, Մուշէ, Մովսէս, Եզնակ, Կորիւն, Եղիշէ, Դաւիթ, Մամբրէ, Արձան, Խոսրով, Ղազար պատմիչն։ Սոքա թարգմանեցին ի ստոյգ օրինակաց…։ Եւ յետ թարգմանութեան գրոցն ընտրեցին զնոսա 60 արս եւ յղեցին յԱթէնս, զի ուսցին

զամենայն իմաստութիւնս եւ զայցեն եւ աթոռ զպրութեան զիցեն ի Հայս...: Իսկ յետ դառնալոյն նոցա յԱթենայ՝ վճարեալ էր սուրբ Վարդանանց պատերազմն ի Պարսից. եւ եղեալ էր ժողովն Քաղկեդոնի հերձուածոյն. զոր եկեալ մեծն Դաւիթ եւ Մովսէս քերթողն, յանդիմանեցին զգլխաւորս Քաղկեդոնի ժողովոյն. եւ ափ ի բերան արարին զնոսա. եւ ոչ երկեան ի թագաւորէն Մարկիանոսէ...: Եւ էր յառաջ քան զթուականն Հայոց ՀԳ ամաւ... իսկ ի սրբոյն Մեսրոպայ մինչեւ ի թուականն Հայոց ՃԼԴ ամ էր անցեալ...: — Թէ որո՞վ ուսմամբ էր Դաւիթ: Այս ինքն զամենայն իմաստասիրութիւն ուսեալ էր Դաւիթ ԺԲ. մասամբ...: Թէ որպիսի՞ պատիւ ունէր. այսինքն է, զի ունէր պատիւ քահանայութեան եւ վարդապետութեան եւ իմաստասիրութեան...: Կոչեցաւ Անյաղթ...: Թէ քանի՞ գիրք գրեաց. այսինքն Ե. ա. զՍահմանքս. բ. զԲարձրացուցէքն. գ. զՊէտքն. դ. զՄեկնութիւն Քերականին. ե. զՄեկնութիւն Պորփիւրի եւ զԱրիստոտելի: ...Վասն է՞ր ոչ արդիւնաւորեցաւ բանք նորա ի Հայս... Անարգեցին (Հայք) զնա եւ զբանս նորա. եւ հարեալ մխրաւորեցին զնա՛. եւ նա գնացեալ ի Վիրս եւ անդ կացեալ վախճանեցաւ» (էջ 172) «Յորժամ մեծն Դաւիթ եւ Եզնակ Կողբացին գնացին ի յԱթէնս յուսումն, տեսին բիծ ի վարս Վարդապետացն եւ զայրացեալ մեղադրեցին նոցա. եւ նոքա լուեալ զայրացան

*եւ ասացին զՀայս կարճոգի եւ չարաճճիս եւ հակառակողս եւ փորձողս. եւ ասացին չթողուլ զոք ի Հայոց ուսանիլ ի յԱթէնս. եւ ոչ գոյր այլ պատճառ բայց առաւել իմանալ քան զայլ ազգս...»* (*էջ* 151):

*Առաքել Սիւնեցւոյ Մեկնութիւն Սահմանաց գրոցն Դաւթի. Մադրաս* 1797, *էջ* 169—172:

*Առաքել Սիւնեցի աւարտած է Դաւթի վէպը: Ան հետեւած է խակաց գրոց. ան ծանօթ է, ինչպէս կ'երեւայ, Բարձրացուցէքի Նախադրութեան, թէեւ չէ յիշած Դաւթի Հարքացի ըլլալը: Ան գիտէ Դաւթի ոչ միայն Ներգինացի ըլլալը, այլ եւ Ներգինեայ գիւղին գոյութիւնը եւ տեղը. վկայութիւն կը բերէ Անանիա Շիրակացին, որ այդ գիւղին մէջ առաւօտեան ժամերգութեան երգերը յօրինած է. ի՞նչ աղբիւրէ. մեզի անծանօթ է: Գիտէ աշակերտաց թիւը* 60, *ըստ Նախադրութեան, եւ աշակերտներու արտաքսումը Աթէնքէն, ըստ Վանականի: Ուսկի՞ց գիտէ Դաւթի հալածանքը Հայաստանի մէջ եւ անկէ փախուստը Վրաստան եւ մահը:*

*Առաքել Աշակերտաց առաքումը կը համարի* 417*ին. եւ վերադարձը* 478*ին:*

*Այս բոլոր տեղեկութիւնները, որ հաղորդուած են մեզի աւանդութենէ, Դաւթի եւ անոր աշակերտակիցներու մասին, որ եւ է պատմական արժէք չունին, բայց այն կէ-*

տէն թէ Դաւիթ Հարքացի է եւ Հերեթն գիւղէ։

Նաեւ այսօր կարող ենք կրկնել Սամուէլ Անեցւոյ հետ, թէ Ունինք Դաւիթ Ներգինեցի, Գրիգոր Նարեկացի, Մովսէս Խորենացի վարդապետները, «որոց ի բանիցն պարարտութենէ զուարճանամք եւ զխարդն կենաց եւ վարուց փափագելով գիտել՝ ո՛չ ունիմք եւ ոչ մի բան վասն երանելեացն պատմութիւն» (Յիշատակարան Սամուէլի Անեցւոյ Մեկնութեան Ներսէս Լամբրոնացւոյ յամէ 1193. Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ 549)։

12. ԴԱՒԻԹ ՆԵՐԳԻՆԱՑԻ

Գրիգոր Արասու որդի իր Պատճառաց գրքի մէջ կը գրէր, թէ Դաւիթ փիլիսոփայ Սահմանաց գրքի խորագրին մէջ իր անունը լռած է, այսինքն անանուն հրապարակ հանած է զայն։ Եւ իրօք ալ կան ձեռագիրներ, որոնք պարզապէս «Գիրք Սահմանաց» խորագիրը կը կրեն։ Ոչ միայն այս գիրքը, այլ եւ Դաւթի ընծայուած միւս իմաստասիրական գրքերը անանուն էին, այսպէս Պաւիայի հայերէն ձեռագրին մէջ, որ Սարկաւագ վարդապետին օրինակն էր։ Վերագոյն տեսանք, որ այս գրուածքները յոյն բնագրին մէջ զանազան հեղինակներու, Յամբղիքոսի, Ամմոնիոսի, Ողիմպիոդորոսի եւ Դաւթի անունները կը կրէին։ Սարկաւագ

վարդապետ իր նուրբ գրքերու ցանկին մէջ յիշած էր միայն Արիստոտէլի եւ Պորփիւրի անունները ։

Էակաց գիրքը Սահմանաց գրքի հեղի-նակը հայ Դաւիթ փիլիսոփան համարած էր, Բարձրացուցէքի Նախադրութեան հեղի-նակը այդ Դաւիթը Հարքացի կ'անուանէր եւ Հերեթն գիւղէ ։ ԺԲ. դարէն սկսեալ իմաս-տասիրական գրուածքներու թարգմանիչ եւ մեկնիչ եւ Բարձրացուցէքի հեղինակ ցոյց կու տան Դաւիթ Ներգինացին.

ա. «Դաւթի փիլիսոփայի Ներգինացւոյ Լուսաջարանութիւնք Սահմանաց իմաստա-սիրութեան (էջմիածին, Թ. 1747, յամէ 1243.

բ. Արիստոտէլի Պերիարմենիաս. «Թարգ-մանեալ եւ մեկնեալ ի Դաւթայ Ներքինաց-ւոյ» (էջմ. 1943, յամէ 1255). Թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ». անդ, 1825 (յամէ 1370՞) ։

գ. Դաւթի փիլիսոփայի Ներգինացւոյ Վերլուծութիւն ի Ներածութիւնն Պորփիւրի (էջմ. 1716, յամէ 1276) ։

Առաքել Սիւնեցի կը գրէ. «Դաւիթ Ներգինացի կոչի. Ներգինեայ է գիւղն այն, ուր Անանիա Շիրակացին առաւօտու երգերն էր աասցեալ. եւ Դաւիթ յայամ գեղջէ էր, որ է ի Տարօնոյ գաւառէն (Լուծմունք Սահ-մանաց, էջ 169) ։ Թէ ի՞նչ աղբիւրէ առած է այս տեղեկութիւնը Շիրակացւոյ մասին, ինձ ծանօթ չէ ։ Սիւնեցւոյ այս տեղիքին

վրայ յեցած է Հ. Զամչեան, որ երեք անգամ յիշած է, թէ է «Դաւիթ... ի գաւառէն Հարքայ ի գեղջէն Ներգինայ առ սահմանօք Տարօնոյ» (Ա. 539, 783 եւ Գ. յաւելուած, էջ 173 «Ներգեն կամ Ներգին գիւղ»: Ան աչքի առջեւ ունեցած է նաեւ Ստ. Ասողնիկի եւ Նախադրութեան տեղիքները: Այլուստ ծանօթ չէ ոչ Հերեթն եւ ոչ Ներգինա:

Ինձ կը թուի թէ Ներգինեցի (որ գրուած է նաեւ Ներքինեցի) յառաջագայած է Ներքինէն, որուն հականիշն է արտաքին. կազմուած է նմանութեամբ տնեցի եւ դրսեցի, հայեցի բարդութիւններու. միտքն է Դաւիթ Ներքինեցի, տնեցի հեղինակ էր, եւ ոչ թէ դրսեցի, արտաքին (հմմտ. Արտաքինք):

## 13. ԴԱՒԻԹ ԲԱԳՐԵՒԱՆԴԱՑԻ ՓԻԼԻՍՈՓԱՅ

Սեբէոսի եւ Ստեփանոս Ասողնիկի պատմագրութիւններու մէջ մուտ գտած է Թուղթ մը, զոր գրած են Հայոց եպիսկոպոսները, իբրեւ պատասխան Կոստանդին կայսեր հրովարտակի մը: Այս Թուղթը ունի Նախաբան մը, ուր պատմուած է Թուղթին գրութեան պատճառը: Այս տեղ յառաջ կը բերեմ այդ Նախաբանէն տեղիքս եւ կու տամ անոր վերլուծութիւնը.

«Յամս թագաւորութեանն Կոստանդնի որդւոյ Կոստանդեայ, թոռին Հերակլի, արկ նա (սատանայ) ի գործ գխորամանկութիւն իւրոյ չարութեանն, արբանակս կալաւ

*զգօրսն որ Յունաց որ ի Հայաստան աշխարհիս: Քանզի ոչ երբեք ընդունէին Հայք զհոռոմն ի հաղորդութիւն մարմնոյ եւ արեանն Տեառն: Եւ արդ գրեն նոքա (զօրքը) ամբաստանութիւն առ թագաւորն Յունաց Կոստանդին եւ հայրապետն, թէ «իբրեւ զանօրէնս համարեալ եմք յաշխարհիս յայսմիկ. քանզի անարգանս համարին Քրիստոսի Աստուծոյ զժողովն Քաղկեդոնի եւ զՏումարն Լեւոնի. եւ նզովեն զնոսա»:*

*Յայնժամ հրաման ետ թագաւորն հայրապետաւն հանդերձ եւ գրեն հրովարտակ առ Հայս, զի միաբանութիւն հաւատոյ արասցեն ընդ Հոռոմոց եւ մի խոտեսցեն զժողովն եւ զՏումարն զայն:*

Եւ էր անդ այր մի ի Բագրեւանդ գաւառէ, ի Բագաւան գեղջէ, որ էր ուսեալ զարուեստ փիլիսոփայութեան, եւ անուն նորա Դաւիթ: Զնա հրամայեաց արձակել ի Հայս, զի երթեալ ի բաց հատցէ զհակառակութիւնն:

*Եւ ժողովեցան ամենայն եպիսկոպոսունքն եւ նախարարքն Հայոց ի Դուին առ քրիստոսասէր կաթողիկոսն Ներսէս եւ առ բարեպաշտ զօրավարն Հայոց Թէոդորոս Ռշտունեաց տէրն: Եւ տեսին զհրամանս թագաւորին եւ* լուան զբանս փիլիսոփային, որ ուսուցանէր զերրորդութիւնն բաժանմամբ ըստ տումարին Լեւոնի:

*Եւ իբրեւ լուան՝ չառին յանձն փոխել զճշմարիտ վարդապետութիւնն սրբոյն Գրի-*

գորի՝ ըստ Տումարին Ղեւոնի: Հաճոյ թուեցաւ ամենեցուն առնել թղթոյն պատասխանի (Սեբէոս, էջ 119. Մտեփ. Ասողնիկ, էջ 90):

«Յամս Կոստանդնի...» ցոյց կու տայ թէ գրութիւնս ինքնակաց աշխատութիւն է, օտար ձեռքէ եւ ոչ Սեբէոսի Պատմութեան հարազատ մաս. վասն զի Սեբէոս, որ պատմած էր արդէն կայսեր ազգարանութիւնն եւ գահակալութիւնը, պէտք չունէր կրկնութիւն ընել: Կոստանդին, որ մանուկ հասակին ժառանգած էր գահը (641), վախճանեցաւ 668ին: Պատմագիր մը թոյլ պիտի չտար իրեն, պատմական դէպք մը անորոշ թուականով, «յամս Կոստանդնի», տալ:

Դէպքը պատահած է Ներսէս Գ. կաթողիկոսի եւ Թէոդորոս Ռշտունեայ օրով: Կաթողիկոսի կեանքին ժամանակագրութիւնն է.

Ա. ամ 641, գահակալութիւն.

Դ. ամ 644/5, Ժողով Դունայ.

ԺԳ. ամ, 652/3 Կոստանդին Կայսր ի Դուին.

ԺԳ.—ԺԸ. 653—657/8. Հայաստան Արաբացւոց տակ.
Ներսէս ի Կ. Պոլիս եւ ի Տայս.
Թէոդորոս Ռշտունի կը վախճանի (656/657).

ԺԸ—ԺԹ. 658 Ներսէս ի Դուին. Հայաստան կայսեր տակ:

*Ի. 660/661 Սեբէոս կ'աւարտէ իր Պատմութիւնը.*

*Ներսէս կը վախճանի.*

*Անաստաս Կաթողիկոս* 661—668°:

*Եթէ ժողովը գումարուած է Ներսէսի եւ Թէոդորոսի ներկայութեան, այս կարող էր ըլլալ միայն* 649/650 *տարւոյն:*

*Կ'ըսուի թէ Յոյն զօրքը գանգատած է, որ Հայերը «անարգանս համարին Քրիստոսի Աստուծոյ զժողովն Քաղկեդոնի եւ զՏումարն Լեւոնի եւ նզովեն զնոսա»: Բայց հոս կը չեշտուի, թէ «Ոչ երբեք ընդունէին Հայք զՀոռոմս ի հաղորդութիւն մարմնոյ եւ արեան Տեառն»: Այս տեղիքը յայտնապէս կ'ակնարկէ* 652/653*ին կայսեր այցելութիւնն ի Դուին եւ հաղորդութիւնը* (*Սեբ.* 140—143): *Այն ձեռքը, որ գրած է այդ էջերը, կը թուի թէ նոյն է այս Նախադրութեան հեղինակին հետ. այս նոյնութիւնը կը մատնէ տեղիքս. «Յառաջ քան զայս չորս* (*Յովհ. Դրասխանակերտցի՝ «երկու»*) *ամօք ժողով արար* (*Ներսէս կաթողիկոսդ*) *եւ զամենայն եպիսկոպոսունս այսր ժողովեաց եւ վասն հաւատոյ գիր ետ առնել. եւ կնքեաց նախ իւրով մատանեաւն եւ ապա մեր եւ ապա ամենայն իշխանացն մատանեօք: Եւ գիրն այն այժմ առ դմա է. հրամայեցէք խնդրել եւ տեսանել»* (*Սեբ.* 142): *Ուստի «ժողովը» տեղի ունեցած է* 648/649 *տարւոյն:*

*Եթէ այս ժողովի պատասխանի-թուղթը ղրկուած է կայսեր, անոր բովանդակու-*

*թեան եւ ստորագրութիւններու ծանօթ պիտի ըլլար կայսրը: Ուրիշ համաձայնագի՞ր մ'ալ գոյութիւն ունէր, Կաթողիկոսի եւ եպիսկոպոսներու եւ Թէոդորոս Ռշտունիի ստորագրութեամբ եւ Կայսեր ուղղուած թուղթին յետսընդդէմ:*

*Առ կայսր գրուած թուղթին պատճէնը յառաջ բերուած է (Սեբ. 120—134): Այս թուղթը չի կրնար կայսեր հրովարտակին պատասխանը նկատուիլ: Ան պատասխանի թուղթի նկարագիրը չունի. չկայ հոն որ եւ է առաջարկուած խնդրի լուծում, թեր կամ դէմ: 1. Կը ներկայացուի Հայոց հաւատոյ Հանգանակը. 2. կը հաստատուի, թէ Հայոց եկեղեցին Ս. Գրիգորէն ստացած է հաւատքն եւ զայն անեղծ պահած. 3. կ'ընդունի առաջին երեք տիեզերական ժողովները. կը մերժէ Քաղկեդոնի ժողովը. չի հաղորդուիր Քաղկեդոնականներու հետ. 4. կը ջատագովէ «Որ խաչեցարը». 5. կը մերժէ իբրեւ պոռնկութիւն երրորդ եւ չորրորդ ամուսնութիւնը. բայց թոյլատրելի կը նկատէ երկրորդը՝ որոշ ապաշխարութեամբ:*

*Այս թուղթը եւ անոր Նախագրութիւնը ուշ ժամանակի կեղծիք է, խմբագրուած հաւանօրէն Թ. դարու վերջերը, խմբագիրը մոլեռանդ եւ անհմուտ անձ մըն է. ամբողջը քաղուած հանուած է անընտրութեամբ հին գրականութենէ. ունի ձեռքի տակ Եւսեբիոսի Եկեղ. Պատմութիւնը (էջ 126/128). Այիթալայի թուղթը (էջ 130, տ. 8—131,*

2 = էջ 38, 41, 18—19)։ Էջ 131, տ. 12—133, 4 կը գտնուի ինքնակաց՝ Դաւիթ քահանայի կազմած հաւաքածոյքին մէջ, Էջմիածին, Թ. 2639 ՃՂԸ հատուած։ Էջ 134, տ. 16—20 Կիւրղի առ Նեստոր Թուղթէն առնուած է, սխալաչատ. հմմտ. Գիրք Թղթոց, էջ 404։ Ծանօթ է Թէոնի ճարտասանական կրթութեանց եւ Պիտոյից գրքին, կարդացած է Բանք իմաստասիրաց, Փաւստոս եւ Ագաթանգեղոս. վերջինէս է աղաւաղուած կոչումս. «Բանդի մարմնացաւ ի մի բնութիւն եւ խառնեաց միացոյց զմարդկութիւնս ընդ իւրում աստուածութեանն (էջ 127), զոր Ագաթանգեղոս ունի. «Բանդի միացաւ ի մարմնի բնութեամբ եւ խառնեաց զմարմինն ընդ իւր աստուածութիւնն (էջ 185, տ. 5)։

Մենք գիտենք, որ Ներսէս Գ. 646ին գումարեց ժողով մը, ուր ներկայ էին 17 եպիսկոպոսներ, եւ սահմանեցին 12 բարեկարգական կանոններ։ Այդ ժողովին մէջ էր նաեւ Սեբէոս Բագրատունեաց եպիսկոպոսն եւ պատմագիրը. բայց այդ ժողովի մասին որ եւ է յիշատակութիւն չէ ըրած Սեբէոս իր Պատմութեան մէջ. վասն զի կը գրէր ան ոչ եկեղեցական, այլ ժամանակի քաղաքական պատմութիւնը։ Ուստի չենք կրնար հաւատալ թէ ան ինքնաբերաբար իր Պատմութեան մէջ զետեղած ըլլայ այսպիսի զուտ կրօնական–դաւանաբանական Թուղթ մը հանդերձ

Նախադրութեամբ, որ անճարակ հակաճառութիւն մըն էր ընդդէմ Յունաց։

Արդ այսպիսի անվաւերական գրուածքի մը վկայութիւնը Դաւիթ փիլիսոփայի մասին կը տուժէ իր արժանահաւատութիւնը։ Այլուստ վկայ չունինք, թէ եղած է Է. դարու առաջին կէսին Բագրեւանդի Բագաւան գիւղէն Դաւիթ մը, որ Կ. Պոլիս «զարուեստ փիլիսոփայութեան» ուսած ըլլայ եւ Կայսեր կողմէ դեսպան ուղարկուած ըլլայ Դուին, խաղաղելու համար Հայոց եւ Յունաց մէջ ծագած «հակառակութիւնը» դաւանաբանական հողի վրայ. եւ ուսուցանել փորձած ըլլայ «զԵրրորդութիւնն բաժանմամբ ըստ տումարին Լեւոնի»։

Բայց ծանօթ է մեզի Դաւիթ Հարքացի փիլիսոփայ մը, որ ուսած Կ. Պոլիս, շրջած է Հայաստան, Անաստաս կաթողիկոսի օրով։

Ասոր համար կ’ըսուի, թէ 686ին «Դաւիթ երեր զթուղթն կայսեր ի Դվին. եւ ժողովեցան առ Սահակ եպիսկոպոսք. եւ զԴաւիթ պղծեցին» (կարդա՞լ կոչեցին). Ժամանակագրութիւն Յովհաննէս աւագերէցի (հրտ. Վ. Յակոբեան, Մանր ժամանակագրութիւններ. Բ. Երեւան 1956, էջ 20)։

Այս թուականին կայսրն էր Յուստինիանոս Բ. եւ Հայոց Կաթողիկոսը Սահակ, ժողովը գումարուած է Դուին։ Արդեօք այս տեղիքը իրեն աղբիւր չունէ՞ր այն ձեռքը, որ գրած էր Սերխոսի Պատմութեան յիշեալ օտարամուտ յաւելուածը (interpolation)։

## ՄԱՍՆ Բ.

# ԴԱՒԻԹ ՀԱՐՔԱՑԻ

### 1. ԴԱՒԻԹ ՀԱՐՔԱՑԻՈՅ ԿԵԱՆՔԸ

Տեսանք վերագոյն, թէ աւանդութիւնը Դաւիթ անյաղթ փիլիսոփան եւ «Բարձրացուցէք»ի հեղինակը կը ներկայացնէր Հարք գաւառէն եւ Հերեթն գիւղէն:

Հարք գաւառը կը պատկանէր Տուրուբերան նահանգին: Իսկ Տուրուբերան կը կոչուէր նաեւ «Տարօնոյ աշխարհ»: Ուստի Հարքացի մը կարող էր նահանգի անունով «Տարօնացի» ալ նկատուիլ. եւ Տարօնացին «Մամիկոնեան» համարուիլ:

Հերեթն գիւղանունը նաեւ Հերք, Հերտան(ացի), Հարքեւ, Հերեան (Հերե՞տն) գրուած է. անոր աշխարհագրական դիրքը անծանօթ է մեզի:

Դաւթի հօր անունն է Եղիա, քահանայական դասէ: Դաւիթ ծնած ըլլալու է իբր 630ին եւ վախճանած իբր 720ին: Աւանդութիւնը կու տայ իրեն խոր ծերութիւն:

Դաւիթ իր բարձրագոյն կրթութիւնն առած է Կ. Պոլիս, ուր հետեւած է փիլիսոփայական ուսմանց եւ արժանացած է «հիւպատոս» տիտղոսի իբրեւ առաջին, «անյաղթ» փիլիսոփայ. ապա ընտրած է եկեղեցական կոչումը, ձեռնադրուած երէց: Թէ դասախօսա՞ծ է Կ. Պոլսոյ համալսարանը,

այս մասին որ եւ է ակնարկութիւն չեմ գտած ։ Բայց ուշադրութիւն դարձուցած է անոր վրայ արքունիքը․ որ զինքը իբրեւ պատգամաւոր ուղարկած է օտար արքունիքներ ։ Իր մասին ըսուած կը համարիմ ինչ որ գրուած էր Դաւիթ «Բագրեւանդացւոյ» համար, թէ «էր անդ (Կ․ Պոլիս) այր մի ի [Բագրեւանդ] գաւառէ, ի [Բագաւան] գեղջէ, որ էր ունեալ զարուեստ փիլիսոփայութեան, եւ անուն նորա Դաւիթ» եւ Կայսեր կողմէ ուղարկուած Դուին ։ Նոյնպէս իրեն կը մերժեցնեմ ինչ որ պատմած է Աղուանից պատմիչը Դաւթակի մասին․ «Յայնժամ ճարտասան ոմն . . . տեղեակ արհեստական իմաստից, Դաւթակ անուն կոչեցեալ, հնարագիտական վարժիւքն աջողակ եւ վերծանական քերթութեամբ յառաջադէմ . . . սա յոլով աւուրբք յառաջ ժամանեալ յամէր ի դրան արքունի» Ջուանշիր իշխանի, իմացիր Աշոտ Բագրատունի պատրիկին ապարանքը ։

Դաւիթ առաջին անգամ կը յիշուի իբր 662ին «Տարօնեցի» յորջորջումով ի Դամասկոս․ ուր Համազասպ Կուրապաղատի հրամանով կը թարգմանէ Ս․ Բարսղի ի Ծնունդն Քրիստոսի ճառը ։ Ընդ մէջ 663—688 տարիներուն կը գտնենք զինքը Աշոտ պատրիկի ոստանին մէջ ի Դարիւնք․ հոս հակաճառեց յակոբիկ Թէոդորէ եպիսկոպոսին հետ (663°), խօսեցաւ իր ճառն ի Ս․ Խաչ (675°) եւ Դամբանականն ի մահն Աշոտի (688) ։

*Այնուհետեւ, իր յառաջացած տարիքին, ապրեցաւ Կ. Պոլիս, «Հիւպատ եւ Թագաւորական սեղանոյ կեսար (կենառ) տիտղոսներով: 712—718 տարիներուն կը գտնենք զինքը Ստեփանոս քահանայի հետ գրաղած թարգմանութիւններով: Այս տեղ կը կորսնցնենք Դաւիթ փիլիսոփայի հետքը պատմութեան մէջ: Նա վախճանած է հաւանօրէն 719/20 տարւոյն:*

*Այս է Դաւիթ Հարքացւոյ մասին մեր կատարած ուսումնասիրութեան ամփոփ եզրակացութիւնը: Կը մնայ այժմ մեզ մի առ մի ներկայացնել մեր եզրակացութեան ապացոյցները, որոնք սերտիւ կապուած են ժամանակակից պատմութեան եւ մատենագրութեան հետ:*

## 2. ՀԱՄԱԶԱՍՊ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

*Թէոդորոս Ռշտունի 653ին կնքեց Մուաւիայի հետ դաշինք· որով իր ձեռքի տակ եղած գաւառները կ՚ենթարկուէին արաբական գերիշխանութեան: Թէոդորոսին քով էր Համազասպ Մամիկոնեան, որ Ռշտունւոյ փեսան էր: 657ին Մուաւիա կանչեց իր մօտ հիւսիսի արաբ զօրականը· որուն հրաման տուած էր իրեն հետ առնել այդ կողման իշխաններն եւ իշխանուհիները իբրեւ պատանդ: Անոնց մէջ էր Թէոդորոս Ռշտունի· որուն փոխարէն իշխան կարգուած էր Համազասպ եւ անոր եղբայրը Գրիգոր պատանդ տարուած:*

Մուաւիա մտահոգուած էր․ կը գտնուէր ընտանեկան պատերազմի առաջ։ Այս պատճառաւ ալ գնած էր Կոստանդին կայսրէն 30ամեայ զինադադար։ 658ին սկսաւ քաղաքական պատերազմը։ Քաջալերուած ամէն հիւսիսը (Հայաստան, Սիւնիք, Վրաստան եւ Աղուանք) թօթափեց արաբական լուծն եւ անցաւ կայսեր ծառայութեան։

Համազասպ, որ 657ին կնքած էր Հռոմէական Հայաստանի զօրավարին, Մուշեղ Մամիկոնեանի հետ զինադադար, կամայ ակամայ ենթարկուեցաւ ընդհանուրի կամքին։ Ներսէս Գ․ կաթողիկոս խնդրեց Կայսրէն անոր համար կուրապաղատութեան պատիւ․ եւ Կայսրն «արար․․․ զՄամիկոնէից տէր զՀամազասպ՝ Կուրապաղատ եւ ետ նմա գահոյս արծաթիս եւ զիշխանութիւնն աշխարհին Հայոց» (Սեբ․ 151)։ Այս տեղի կ'ունենայ 658/9ին։ Մուաւիա կոտորել տուաւ իր քով գտնուած պատանդները․ բայց խնայեց Գրիգոր Մամիկոնեանի։

Մուաւիա ելած էր յաղթական (661) եւ հռչակուած արաբական իշխանութեան միահեծան տէր եւ մայրաքաղաք ընտրած Դամասկոսը։ 661/2ին չեղեալ հրատարակեց զինադադարը եւ շարժեց բանակները Կայսեր դէմ։ Հասաւ բանակ մ'ալ հիւսիս։ Ստ․ Ասողնիկ կը գրէ, թէ Մուաւիայի Ա․ եւ Կոստանդինի ԻԸ (°) տարւոյն Սմբատ Բագրատունի իշխանը եւ Յունաց զօրավարը յայնկոյս Եփրատի պատերազմեցան Արաբներու

հետ «եւ պարտեալ ի փախուստ դարձան. եւ ապա գրեն հրովարտակ ի Հայս՝ հարկել նոցա. եւ յանձն առին իշխանքն նախարարօքն եւ կաթողիկոս Ներսէս՝ 500 դահեկանս յամենայն ամի հատուցանել: Եւ Մաւիա զԳրիգոր՝ իշխան հաստատեաց Հայոց եւ Վրաց» (էջ 122): Մուաւիայի առաջին տարին է 661/62:

Գրիգոր Համազասպի եղբայրն է. պատմագիրներու քով այլ եւս խօսք չ՚ըլլար Համազասպի մասին. միայն Յովհ. Դրասխանակերտցին է, որ կը յիշէ անոր մահը Գրիգորի ուղարկուելէն յառաջ, ինչ որ հաւանական չէ: Ինծ կը թուի, թէ Համազասպ ինքնակամ հրաժարեցաւ իշխանութենէն (661/62) ի նպաստ իր եղբօր Գրիգորի եւ առաջարկեց ինք զինքը ամիրապետին իբրեւ պատանդ իր եղբօր համար. ինչ որ հաճելի եղաւ վեհանձն ամիրապետին: Այսպէս մտածել կը թելադրէ կուրապաղատին ներկայութիւնը ի Դամասկոս:

### 3. ՀԱՄԱԶԱՍՊ ԵՒ ԴԱՒԻԹ ՏԱՐՕՆԵՑԻ

Համազասպ կը ներկայացուի «այր առաքինի յամենայն դէմս. բայց ընդանեսուն եւ ընթերցասէր եւ ուսումնասէր... ոչ մտեալ ի ճակատ եւ ոչ տեսեալ զդէմս թշնամեաց» (Սեբ. 150):

Այս նկարագրին համապատասխան են

ա․ *Երանելոյն Անաստասայ Հայոց վարդապետի գրեալ զԱնուանս վանորէիցն Երուսաղէմի* ի խնդրոյ իշխանին Համազասպայ [*Կամսարականի Պալհաւունւոյ*] որ կամէր գնալ յԵրուսաղէմ, որ եւ գնաց իսկ *եւ արժանացաւ աստուածակոխ սուրբ տեղեացն*[1] ։

բ․ «*Անուանք վանորէից, որք յԵրուսաղէմ են շինեալ յԱզգաց մերոյ անուն, զորս ի թղթոյ երանելոյն Անաստասայ առ Վահան Մամիկոնեան առեալ ուսաք*» (*Պատմութիւն Ազգաց մերոյ* Բ․ 52) ։

գ․ *Ս․ Քաղաքի Ծնունդն Քրիստոսի ճառին վերջը*․ «Դաւիթ թարգմանն Տարօնացի զճառս զայս յետոյ դարձոյց ի յունէն ի հայ բարբառ ի Դամասկացւոց քաղաքին հրամանաւ Համազասպայ Կուրապաղատի Մամիկոնենից տեառն․ եւ եղիցի օրհնութիւն Տեառն ի վերայ նորա[2]» ։

*Առաջինին մէջ իշխանն Համազասպ կը խնդրէ «Անաստաս Հայոց վարդապետէն» Երուսաղէմի հայկական վանքերու անուանացանկը, որովհետեւ մտադիր էր այցելել Երուսաղէմ․ եւ կ՚ըսուի թէ իրօք ալ գնաց ։*

*Ո՞վ էր Անաստաս վարդապետ, ո՞ւր հանդիպեցաւ անոր Համազասպ եւ ե՞րբ ուխտագնաց եղաւ ան Ս․ Քաղաքը ։ Այլուր առիթ ունեցած եմ խօսելու Անաստաս վար–*

---

[1] *Հ․ Ղ․ Ալիշան, Հայապատում, Բ․, էջ* 229 ։
[2] *Գարեգին Կաթողիկոս (Յովսէփեան), Յիշատակարանք ձեռագրաց, Ա․, Անթիլիաս* 1951, *էջ* 47 ։

դապետիս մասին [3]. այս դարուն մէկէ աւելի Անաստասներ կային Պաղեստին. անոնց մէջ համբաւաւորն էր Անաստաս Սինայեցի, որուն համար կ՚ըսուի թէ Վահան Խորխոռունին ըլլայ, որ 640ին արեւելեան բանակէն կայսր հռչակուած էր ընդդէմ Հերակլի եւ ապա Արաբացւոց քով ապաստանած, եկեղեցական կոչում ընտրած եւ վարդապետ հանդիսացած: Սա աւետարանութեամբ շրջած է Պաղեստին, Եգիպտոս եւ Սիւրիա, հեղինակած է զանազան գրական գործեր: Կա՛մ սա եւ կա՛մ նոյնանուն մը ի Սինա հանդիպած է Հայոց Եղիշէ վարդապետին: Եթէ Համազասպ գտնուած է Դամասկոս եւ Անաստաս շրջած է Սիւրիա, կար հնարաւորութիւն հանդիպելու իրարու: Եւ եթէ Համազասպ եղած է Դամասկոս, կարող էր անկէ այցելել Երուսաղէմ: Այս ենթադրութիւնները ուժ կ՚առնեն երկրորդ յիշատակարանէն:

Համազասպ փոխուած վահանի. ասկէ կրնանք հետեւցնել, թէ Համազասպ փոխած է իր անունը, առած է Վահան, Անաստասի թողած անունը: Հաւանօրէն առած էր ան կրօնաւորական սքեմ եւ եղած մեռած աշխարհի:

Դաւիթ Տարօնեցի հրաման կ՚ընդունի Համազասպ Կուրապաղատէն, որ թարգմանէ Բարսղի ճառը. ուստի Համազասպ կը ճանչնար Դաւիթը, գիտէր թէ ան հմուտ է հայե-

[3] Ակինեան, Եղիշէ վարդապետ, Գ., էջ 340—341:

*րէն եւ յունարէն գրաւոր լեզուներուն եւ ատակ թարգմանութեան։ Համազասպ, որ կը դովուի իբրեւ ընթերցասէր եւ ուսումնասէր, ծանօթ էր Ս. Բարսղի ճառախումբի մը հայերէն թարգմանութեան։ Ուսկի՞ց իմացուան, թէ այդ ճառերէն զատ ունի Ս. Բարսեղ նաեւ ի Ս. Ծնունդն Քրիստոսի ճառ մը, որ հայերէնի չէ թարգմանուած։ Ես կը կարծեմ, թէ Դաւիթ ինքն խօսք ըրած ըլլայ այս մասին։ Կը հետեւի ասկէ, թէ Համազասպ եւ Դաւիթ, երկու ուսումնասէրներ, նստած մէկ սեղանի առաջ խօսակցած են գրական հարցերու շուրջ. իսկ այս տեղի ունեցած է Դամասկոս, ուր եւ թարգմանած է ճառս Դաւիթ իբր 661/2ին։*

## 4. ՀԱՄԱԶԱՍՊ ԵՒ ԴԱՒԻԹ Ի ԴԱՄԱՍԿՈՍ

*Աղուանից Պատմութեան Բ. 19 եւ յաջորդ գլուխներու մէջ, ուր Ջուանշէր իշխանի վէպը կը հիւսուի, վիպագիրը աղբիւր ունի 653—661 տարիներու համար Սեբէոսը. իսկ յաջորդ՝ 662—688 տարիներու համար յիշատակարան մը, ուր նկարագրուած էին Համազասպ եւ Աշոտ իշխաններու գործերը, հաւանօրէն Դաւիթ հիւպատէն։ Այնու որ վիպագիրը այդ աղբիւրին հետեւելով Ջուանշէրի կեանքն ու գործերը կը վիպագրէ, յաճախ բառական քաղուածներով, կը համարիմ թէ այդ մեզի չհասած աղբիւրէն առնուած հատակոտորներով կա–*

*րող ենք վերակազմել այդ շրջանի պատմութիւնը. եւ նախ Համազասպի վերջին տարիներու եղելութիւնները։*

*Մուշեխ «ի ձեռն հաւատարիմ պատգամաւորաց առաքէր երդմունս մեծամեծս ...զի առ նա երթիցէ (Ջուանշիր, խմացիր Համազասպ), եւ նա «չուեալ ի տար աշխարհ... իբրեւ իջանէր յերկիրն Ասորեստանեայց... եհաս ի դուռն թագաւորին մեծաւ շքով»* (Բ. 27, էջ 224/25)։

*«Զի ճոխք քաղաքին Բիւզանդիոյ եկեալ էին յանձն առնուլ գլուծ հարկատուութեան որդւոցն Հագարու [վասն այն զի յերեսներորդ ամի թագաւորութեանն Կոստանդնի... սպանին զնա]։ Մուշեխ «անհամեմատ մեծարանք եւ պատիւ» կ՚ընծայէ իշխանին. «զի զհարազատ եղբօր իւրոյ զապարանս ի հանդիստ նմա յօրինել հրամայէր եւ յընթրիս միշտ ընդ իւր ի սեղանն նստել. ուստի եւ եկելոցն ի կայսերական քաղաքէն պատուական արանց՝ նմա հրամայէր առ նորա բանս խաղաղականս դնել։ Ընդ որ յոյժ զարմացեալ լինէր թագաւորն յաղագս տրամախոհ խորագիտութեան նորա. որում ոչ սակաւ լինէր շնորհակալութիւն որ ի թագաւորութենէն Հռովմայեցւոց անդ պատգամաւորաց. քանզի բազում իրօք եւ յօգուտ նոցա զթագաւորին հնարէր հաւանեցուցանել զմիտս»* (Բ. 28, էջ 225—226)։

*Առանց տարակուսի «ճոխք քաղաքին*

Բիւզանդիոյ եկեալ էին» Դամասկոս 661ին, գանձելու գհարկս «որդւոցն Հագարու», ըստ 658ի գինադադարի դաշանց. ինչ որ մերժեց վճարել Մուաւիա: Ամիրապետը պահեց Կայսեր պատգամաւորները իր քով մինչեւ Համազասպի գալը. այսինքն մինչեւ Հայաստանի հարկատուութիւնը: Տեղիքս «զհարազատ եղբօր իւրոյ զապարանս ի հանդիստ նմա յօրինել հրամայէր» պէտք է իմանալ՝ Համազասպ բնակավայր ունեցաւ իր եղբօր Գրիգորի ապարանքը. վասն զի Մուաւիա չունէր «հարազատ եղբայր», որ բնակէր Դամասկոս:

Ուստի «եկեալքն ի կայսերական քաղաքէն՝ պատուական արք» նոյն են այն ճոխից հետ, որոնք «եկեալ էին ի քաղաքէն Բիւզանդիոյ»: Անոնց թուին մէջ էր նաեւ Դաւիթ, որուն հետ համարձակ կարող էր խօսիլ Համազասպ մայրենի լեզուով:

## 5. ԱՆԱՍՏԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Ներսէս Գ. կաթողիկոսական գահ բարձրացած է 642, հոկտ. 11էն ետքը, եւ գահակալած է 20 տարի, ուստի 642 հոկտ.—662/3: Անոր յաջորդն եղաւ Անաստաս Ակոռեցի, որ վարեց աթոռը 6 տարի (663—668/9)[4]: Կի–

[4] Ստ. Ասողնիկ Ներսէս Գ.ին տուած է 10 տարի. ապա «յաջորդէ զաթոռն Անաստաս ի ճԻ (671) թուականին եւ վախճանի կացեալ յաթոռն ամս Զ (ուստի † 677): Ի սորա աւուրս էր եւ Փիլոն Տիրակացին,

*րակոս Գանձակեցի կը գրէ, թէ «ի Ե. ամին* (667/8) *Անաստասայ եղեւ չինուած կաթողի–կէին յաւանն Արուճ, զոր չինեաց Գրիգոր պատրիկն»* (*էջ* 35) *: Այս կը համաձայնի նոյն եկեղեցւոյ արձանագրութեան, որուն համե–մատ աւարտած է չինութիւնը Կոստանդին կայսեր «ԻԹ» տարւոյն, այն է* 668 (*վախճա–նած նոյն տարւոյն յուլիս* 15*ին*) *:*

*Անաստաս կաթողիկոս կը յիչուի նաեւ Ջուանչիրի վէպին մէջ. Աղուանից հերսը կը մեկնի Դամասկոս ի տեսութիւն ամիրա–պետին. վերադարձին «գայր հասանէր յԱյրա–րատական գաւառ, ուր ընդ առաջ լինի նմա ի Մամիկոնեան տոհմէ քաջն Գրիգոր համօ–րէն ազատօքն եւ ածէ զնա ի գիւղաքաղաքն իւր Արուճ: Գայր հասանէր անդ աղաւնին սուրբ եւ սիւնն եկեղեցւոյ մեծ հայրապետն Հայոց Անաստաս, զոր տեսեալ մեծահաւատ իչխանին... խոնարհեցուցեալ գինքն՝ օրհ–նեցաւ ի նմանէ որպէս ի հրեչտակէ սրբոյ»* (*Բ*. 27) *:*

*Այստեղ Գրիգոր Մամիկոնեանի դարձը*

---

*որ զՍոկրատայ Պատմութիւնն թարգմանեաց ի հայ լեզու»: Ձեմ կրնար հաւատալ, թէ տողերս Ս. Ասող–նիկի գրչէն ելած ըլլան: Փիլոն Տիրակացի Սոկրատի Պատմութիւնը թարգմանեց* 695/6*ին. իսկ անկէ* 19 *տարի յառաջ* 676/7*ին Գրիգոր Ջորափորեցի թարգմանած էր Սեղբեստրոս Հռոմայ պապի վարք: Ձեռագիրներու մէջ այս երկուքը զետեղուած են մէկ հատորի մէջ, նախ Սոկրատ եւ ապա Սեղբեստրոս, եւ համարուած են մէկ գործ: Իսկ համառօտին, Փոքր Սոկրատի մէջ, երկրորդը զետեղուած է սկիզբը եւ առաջինը՝ վերջը:*

*կը տեսնեմ, որուն ընդառաջ կու գայ Անաստաս եւ կ՚առաջնորդէ Արուճ* (662/3)։

*Նորընտիր կաթողիկոսը Ներսէս Գ.ի սենեկապետն էր, ապա անոր աթոռակալն եւ յաջորդը։ Ան շինեց Ակոռիի «պայծառապաճոյճ» եկեղեցին. հաւանօրէն վերահսկողն եղաւ նաեւ Արուճի եկեղեցույն շինութեան։*

## 6. ԱՇՈՏ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ ՊԱՏՐԻԿ ԵՒ ԻՇԽԱՆ

*Ղեւոնդ յամի* 685 *կը գրէ իր Պատմութեան մէջ.*

*«Յետ մահուանն Գրիգորի (Մամիկոնեանի, իշխանին Հայոց* † 685, *օգոստ.* 16) *յաջորդէ զիշխանութիւնն Աշոտ պատրիկ, այր երեւելի եւ նախամեծար ի մէջ նախարարացն Հայոց, ի տոհմէ Բագրատունեաց. ճոխ եւ պերճ յիշխանութեանն եւ յամենայն վարս երկրայինս զգաստ եւ առաքինասէր. ազնուական քան զամենեսեան եւ ծանօթ երկիւղին Աստուծոյ. եւ հոգաբարձու ամենայն բարեգործութեան.* փոյթ յուսումնասիրութեան։ Եւ զարդարէր զեկեղեցիս Աստուծոյ վարդապետական արուեստիւք *եւ պաշտօնէից խմբաւորութեամբ. պատուէր եւ երեւելի սպասուք յիւրոց գանձուց։*

*Եւ շինէր զեկեղեցին Դարինից յիւրում ստանին. եւ զկենդանագրեալ զպատկեր մարդեղութեանն Քրիստոսի ածեալ ի մտիցն արեւու մեծասքանչ զօրութեամբ՝ հանդու–*

ցանէր ի նմա. եւ նորա անուամբ զեկեղեցին անուանեաց»:

Պատմագիրս այս տեղեկութիւնները հաղորդած է դար մը ետքը. ուստի ունեցած է աչքի առաջ գրաւոր աղբիւր մը, որ մեզի անծանօթ է: Յովհ. Դրասխանակերտցւոյ Պատմութեան մէջ, ինչպէս կ'երեւայ, Աշոտի վերաբերեալ հատուածը կա՛մ աղճատուած եւ կամ դուրս ինկած է: Ստեփանոս Ասողնիկ ձեռքի տակ ունի Ղեւոնդը. այսպէս նաեւ Վարդան եւ այլք: Ինծի կը թուի թէ Ղեւոնդի աղբիւրը մատչելի եղած է նաեւ Ջուանշիրի վիպագրին: Այդ աղբիւրը գրուած ըլլալու է 688ին, իբրեւ Վարք Աշոտ Բագրատունւոյ կամ իբրեւ Պատճառ Աշոտի Գերեզմանականին, որուն հեղինակն է «Դաւթակ» քերդող: Աղուան վիպագիրը ոչ միայն այս Գերեզմանականը մերձեցուցած է իր հերոսին, այլ եւ իր հերոսին վարքը հիւսած է Աշոտի կեանքի հետքերուն հետեւելով: Առած է Աշոտի նկարագրէն գիծեր, տեղ տեղ բառական: Աշոտ կը ստանայ խաչելութեան պատկեր. Ջուանշիր՝ Ս. Խաչիմասունք (Բ. 22): Աշոտ կը շինէ Եկեղեցի Դարինքի մէջ յանուն (Փրկչական պատկերին). Ջուանշիր կը շինէ Գարդմանաբերդի մէջ յանուն «Տուն Աստուծոյ» կամ «յանուն Աստուծոյ» (Բ. 22, 24): Աշոտ կ'երգէ շարական մը ի դէմս Ս. Պատկերին. Ջուանշիր՝ կ'արտասանէ Աղօթք: Ա. կը վիրաւորուի կռուի մէջ (դաւաճանութեամբ) եւ տուն կը տարուի եւ կը վախճանի. Ջ. կը

վիրաւորուի իր կալուածքին մէջ դաւաճանութեամբ եւ տուն կը տարուի եւ կը վախճանի: (Աշոտ ունէր իր ոստանին մէջ Դաւիթ փիլիսոփան) եւ Զ. «Դաւթակ» քերդողը:

Աշոտ, հաւանօրէն որդի Սմբատ Բագրատունւոյ, իր ոստանն ունէր Կոգովիտի Դարինք ամրոցին մէջ: Ան կը կրէր «պատրիկ» տիտղոսը. հաւանօրէն ստացած 658/9ին, երբ Կոստանդին կայսր Համազասպ Մամիկոնեանը անուանեց «Կուրապաղատ» եւ շնորհեց «պատիւս այլոց իշխանացն» (Սեբ. 151): Զարմանալի է, որ Սեբէոս Բագրատունեաց եպիսկոպոս իր Պատմութեան մէջ որ եւ է ակնարկութիւն չէ ըրած Աշոտի մասին:

Հայաստան 661—680 տարիներուն, երբ Մուաւիա էր ամիրապետը, ենթարկուած էր արաբական իշխանութեան: Ունէր իրեն իշխան Գրիգոր Մամիկոնեանը եւ վայելեց երկիրը խոր խաղաղութիւն: Այս խաղաղութեան տարիներուն Հայոց կաթողիկոսներն էին.

Անաստաս 662/3—668/9

Իսրայէլ Ոթմսեցի 669—677°

Սահակ Գ. Ձորափորեցի 677°—703:

Բարգաւաճեցաւ շինարարութիւնը. կանգնուեցան Ակոռի, Արուճ եւ Դարինք եկեղեցիներ. ծաղկեցան անուանի գրագէտներ, Անանիա Շիրակացի, Եղիշէ քահանայ, Դա–

ւիթ Հարքացի, Յովհաննէս Ծախնուտեցի, Սողոմոն Մաքենոցացի:

Ինչպէս Համազասպ Մամիկոնեան, նոյնպէս Աշոտ Բագրատունի կը գովուին իբրեւ ընթերցասէր եւ ուսումնասէր իշխաններ. որոնք կը կազմեն իրենց շուրջ «պաշտօնէից խմբաւորութիւն» եւ կը քաջալերեն զանոնք նուիրուելու գրականութեան: Յատկապէս կը փառաբանուի Աշոտ ոչ միայն իր Նկարագրին ազնուութեամբ, այլ եւ իբրեւ «Հոգաբարձու ամենայն բարեգործութեան, փոյթ յուսումնասիրութեան. եւ զարդարէր զեկեղեցիս Աստուծոյ վարդապետական արուեստից եւ պաշտօնէից խմբաւորութեամբ»: Ան ունէր իր ոստանին մէջ Դաւիթ փիլիսոփան եւ կ'առաջարկէր հարցեր տալ անոր եւ լսել անոր բացատրութիւնները:

Մենք տեսանք վերագոյն, թէ Դաւիթ Տարօնեցի Դամասկոսի մէջ հանդիպած էր Համազասպ Մամիկոնեանի: Ինչպէս կ'երեւայ Համազասպ խորհուրդ տուած է անոր այցելել Հայաստան եւ տեսակցիլ Աշոտ պատրիկին հետ, որ սիրող էր իմաստասիրութեան: Արդեամբք ալ Դաւիթ երեւան կու գայ 663—668 տարիներուն Աշոտի ոստանին մէջ, երբ Անաստաս էր Հայոց կաթողիկոսը: Ունինք այս շրջանէն երեք գրութիւններ, որոնք խորագիր կը կրեն.

ա· Դաւիթ փիլիսոփայի Բանն հաւատոյ ընդդէմ հերձուածողաց:

բ. Նորին Դաւթի ի հրամանէ Անաստասու Հայոց կաթողիկոսի:

գ. Նորին ի խնդրոյ Աշոտոյ պատրկի:

*Աշոտ պատրիկ առաջարկած է Դաւթին չորս հարցումներ ի մասին Քրիստոսի մարդեղութեան խորհուրդին, առ այս կը գրէ Դաւիթ. «Բանն զոր հարցանէք, ով բարեփառութեան հարցափորձող աստուածապատիւ տէր իմ.*

1. *Թէ զի՞նչ միտս մի բնութիւն ասելն առնէ Բանին եւ Մարմնոյն.*

2. *եւ զի՞նչ որ երկուսն ասեն բնութիւնս յետ միանալոյն Բանին ի մարմին իւր.*

3. *եւ որպիսի՞ ինչ յերկուց բնութեանց միացեալ ասելն իցէ զբնութիւն Որդւոյն Աստուծոյ յաստուածութենէ եւ ի մարդկութենէ.*

4. *եւ եթէ ո՞ր է ճշմարտութիւն որով եկեղեցի Աստուծոյ խոստովանի զուղիղ հաւատս»:*

*Դաւիթ կարճիկարճոյ եւ զգուշօրէն կը պատասխանէ այս հարցումներուն ըստ մտաց կաթողիկէ եկեղեցւոյ, առանց վիճաբանելու եւ առանց ակնարկութիւն ընելու Քաղկեդոնի ժողովին եւ Լեւոնի Տոմարին մասին: Այս գրուածքին կը հայի վերագոյն Դաւիթ «Բագրեւանդացւոյ» նկատմամբ ըսուածը թէ «որ ուսուցանէր զչորրորդութիւնն բաժանմամբ ըստ Տումարին Լեւոնի»* (*Սեբ.* 119):

*Ինչպէս կ'երեւայ, այս ժամանակ, երբ Դաւիթ Աշոտի քով էր, պատահած է անտիոքացի Սեւերեանց (Յակոբիկեանց) պատգամաւորութեան ժամանումն ի Դարինս· Աշոտի բարեխօսութիւնը Ամիրապետի քով· եւ այս առթիւ խնդրած է Դաւիթ վիճել անոնց հետ· իսկ Աշոտ խնդիրը ներկայացուցած է Անաստաս կաթողիկոսի:*

*Ի. գրութիւնը ցոյց կու տայ թէ Կաթողիկոսը երկու կողմերէն ալ հաւատոյ դաւանութիւն պահանջած է, իմանալու համար անոնց վարդապետական տեսակէտները: Դաւիթ կը պատասխանէ.*

*«Այլ զի քո բարէփառութիւնդ յօժարեաց դաւանութիւն յերկաքանչիւրոցն պահանջել հաւատոյ, ո՛վ երջանիկդ հովուապետ, արդարեւ հօտաւէր, օրինօք հաւանիմ զքեզ յայս կամս չարժեալ, զոր ոչինչ եւ ինձ գոյ փութալի, որքան եթէ գրով տալ բարեպաշտաբար զառ ի յիսս խոհեցեալս»* (էջ 269):

*Ասկէ ետքը պէտք է գրուած ըլլայ «Բանն հաւատոյ ընդդէմ հերձուածողացն», յանուանէ Սեւերեանց(–Յակոբիկեանց)· զոր գրած է Կաթողիկոսին հրամանով, ինչպէս կը խոստովանի· Համարձակեցայ, կ'ըսէ «յաստուածաբանութեան մխել ճառս», «յորժամ զերկիւղածութեանդ ձերոյ ընկալայ ամենայորդոր փութով[5] գիր»:*

*[5] Ասութիւնս «ամենայորդով փութով» կը յիշեցնէ Պատարագամատոյցի տեղիքս. «Արժան է սուր–*

Աւանդութիւնը պահած է այս դէպքը սակաւ ինչ աղճատուած կերպարանքի տակ: «Բարձրացուցէքի» Նախադրութեան մէջ կ'ըսուի թէ «յաւուրս վերադիտողութեան Հայոց տեառն Գիւտայ (իմացի՛ր Անաստասայ) եկին արք ոմանք ի նահանգէն Անտիոքայ, ի գեղջէն որ կոչի Աւշին, որոց անուանքն Կոստանդին եւ Պետրոս եւ Թէոդորէ... որք ասէին ոչ գոլ զՄարիամ աստուածածին եւ ոչ զխաչն՝ Աստուծոյ Խաչ, այլ գողոց պատժարան» (էջ 100): Բայց յիրականին այդ եկողները ոչ թէ Յուժիկ Նեստորականներ են, այլ Սեւերեան (Յակոբիկ) եպիսկոպոսներ, որոնք միաբնեաներ էին եւ Քրիստոսի մարմինը «ապականացու» վարդապետողներ: Ճիշդ է որ անոնք եկած են Անտիոքէն, վասն զի Սեւերեանց կեդրոնատեղին էր այդ քաղաքը: Անոնց նպատակն էր իրենց վարդապետութիւնը քարոզել եւ շահիլ Հայերը եւ անոնց միջնորդութեամբ բառնալ տալ այն տարեկան տուրքը, զոր դրած էր անոնց վրայ Ամիրապետը: Այս մասին ասորի տարեգիր մը կը գրէ 658/9

---

զապէս եւ իրաւ ամենայորդոր փութով...» (Սրբազան Պատարագամատոյցք, էջ 278): Ուշադրութեան արժանի է նաեւ ճառիս վերջաւորութիւնը «զայնպիսիսն խորհօղս նզովէ կաթողիկէ եկեղեցի եւ մեք. եւ եղիցի նզովեալ», որ Հաւատոյ հանգանակին կցուած յաւելուածէն առնուած է. տե՛ս այս մասին Հ. Յ. Գաթըրճեան, Հանգանակ հաւատոյ, որով վարի Հայաստանեայց Եկեղեցի, Վիեննա 1891, էջ 16, 26, 30 եւ այլն:

*տարւոյն․ «Այս տարի (658 յունիս) Յակոբիկ* Թէոդորէ *եւ Սարոխտ եպիսկոպոսները Դամասկոս եկան եւ Մուաւիայի առջեւ Ս․ Մարոնի հետեւողներու հետ վիճաբանեցան։ Երբ որ պարտուեցան Յակոբիկները, պարտաւորեց զանոնք Մուաւիա, որ ամէն տարի (պետական արկղին) 20·000 դենար վճարեն եւ պատուիրեց որ հանդարտ կենան։ Այնուհետեւ սովորութիւն եղաւ, որ Յակոբիկ եպիսկոպոսները այսքան ոսկի վճարեն Մուաւիային, որպէս զի անոր հովանին իրենց վրայ ըլլայ եւ եկեղեցւոյ հաւատացեալներէն չհալածուին» եւ այլն*[6]*։*

*Թէոդորէ եպիսկոպոսի անունը հայ աւանդութիւնն ալ պահած է։ Հայոց եկեղեցին 548էն սկսեալ Յուլիանոս Հաղիկառնացւոյ վարդապետութեան յարած էր այս կէտին մէջ, այսինքն անապականութեան վարդապետութեան։*

7. ԴԱԻԻԹ ԵՐԷՑ (ՄԱՄԻԿՈՆԵԱՆ) ԵՒ ԴԱԻԻԹ ՀԱՐՔԱՑԻ

*Եղիշէի Հայոց պատերազմի Պատմութեան խորագրին մէջ կ՚ըսուի․ «զոր արա–*

---

[6] Nöldeke, Zur Geschichte der Araber im 1. Jahrhundert d. H. aus syrischen Quellen: Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft, 1876, S. 94—95. *Թէոդորէ եպիսկոպոս հաւանօրէն Անտիոքի Յակոբիկներու համանուն պատրիարքն էր* (648—666)․ *Միքայէլ Ասորի, Բ․, էջ* 443 *եւ* 453․ *հրտ. Շաբոյի. նոյն տեղ (էջ* 453) *կը յիշուի նաեւ Սեւերոս հռետոր, կոչուած Սեբոխտ, վախճանած* 666*ին։*

*րեալ է ի խնդրոյ Դաւթի Մամիկոնի»․ այսպէս ունին ձեռագիրներէն ոմանք․ ուրիշներ լոկ «Դաւթայ երիցու հայցեալ»։ Եղիշէի Պատմութեան ուսումնասիրութեանս մէջ այս Դաւիթ երէցը նոյն համարած էի Դաւիթ Տարօնացւոյ հետ*[7]*։ Այժմ, երբ Դաւիթ Տարօնեցին իր կարգին կը նոյնանայ Դաւիթ Հարքացւոյ հետ, Դ․ երէցի նոյնութիւնը վերջնոյս հետ աւելի կարկառուն դուրս կը ցցուի։ Եղիշէ իր Ընծայականին մէջ իր հայցողին, Դաւիթ երէցին կը բացագանչէ․ «Այլ դու, ով մեծդ ի գիտութեանն Աստուծոյ, առ ի՞նչ արդեօք հրամայեսցես, քան եթէ հրամայիցիս լաւագունաց» (էջ 5)․ այս տեղիքս ճշդիւ կը համապատասխանէ Հարքացի փիլիսոփային։ Եւ որովհետեւ Եղիշէի ժամանակը է․ դարու երրորդ քառորդին, ուստի 650—675ին կը նշանակէի, կարող էր Եղիշէ 662—670 տարիներուն հանդիպում ունեցած ըլլալ Դաւիթ փիլիսոփային հետ, նոյն իսկ Աշոտ Բագրատունւոյ ոստանին մէջ, որ ժողովարանն էր ուսումնասէրներու եւ իմաստասէրներու։*

8. ԴԱՐԻՒՆԻՑ ՓՐԿՉԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆ ԵՒ ԴԱՒԹԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔԸ

*Պատմագիրը կը գրէր թէ Աշոտ «շինէր զեկեղեցին Դարիւնից յիւրում ոստանին եւ*

---

[7] *Եղիշէ վարդապետի Պատմութիւն Հայոց պատերազմի, Գ․ մաս, էջ* 352—354։

զկենդանագրեալ զՊատկեր մարդեղութեանն Քրիստոսի ածեալ ի մտից արեւու, մեծասքանչ զօրութեամբ, հանգուցանէր ի Նմա․ եւ նորա անուամբ զեկեղեցին անուանեաց»։ Ժամանակի մասին որ եւ է ակնարկութիւն չ՚ըներ Ղեւոնդ։

Եկեղեցին շինուած է հաւանօրէն Արուճի եկեղեցւոյ շինուելէն ետքը եւ 681ի ապստամբութենէն յառաջ, ուստի 670—680 տարիներու մէջ․ իսկ Պատկերը բերուած է եկեղեցւոյ նաւակատիքէն յառաջ։ Պատմագիրը կը հաւաստէ, թէ Աշոտ «զկենդանագրեալ զՊատկեր Մարդեղութեանն Քրիստոսի ածեալ ի Մտիցն արեւու . . . հանգուցանէր ի Նմա. եւ նորա անուամբ զեկեղեցին անուանեաց» (Ամենափրկի՞չ)։ Վարդան Արեւելցի այս տեղիքը մեկնած է. Աշոտ «զԴարօնից եկեղեցին յանուն փրկչական Պատկերին, զոր երեր որդի նորա յԱրեւմտից մասամբ» (Ս. Խաչի՞ն). եւ ի նաւակատիսն երգեաց (զերգն) Զօրս ըստ պատկերին» (էջ 71)։

Այս Երգը պահուած է մեզի Հայոց եկեղեցւոյ Տարակնոցի մէջ Եկեղեցւոյ տօնին իբրեւ Ողորմիա.

Զօրս ըստ պատկերի քում ըստեղծեր,
նորոգելով քեզ տաճարացուցեր.
զնորոգեալն ի մէնջ ըզտաճարս
ընկալ քեզ ի բնակութիւն։
Որ շնորհես մեզ, կենաց տըւող,
զկենդանագիր քո ծառայական կերպի,

*բերելով ըզբոլորից ըզվերաբերողդ,*
*ի փառըս սուրբ Երրորդութեանդ:*
*Կեցո զորդի ծառայի քո,*
*զոր ի Հռովմայ գահիցն վերապատուեցեր·*
*ուր եղին ըզվէմն հաւատոյ*
*հիման սուրբ եկեղեցւոյ:*
*Որ ըզվերջինըս զայս հրաշագարդեցեր,*
*քեւ չափ բնակութեամբըդ հիմնափայլեցեր,*
*զպանծալի եւ զփայլեալ ըզփառս*
*տանս այս վերջինս քան զառաջինն:*

*Պատկերը բերուած է ի Մտից արեւու· բայց այս աշխարհագրական ասութիւնը շատ անորոշ է, իմանալու համար, թէ ուսկի՞ց բերուած է: Նախնեաց քով երկիցս կիրարկուած կը գտնեմ զայն «Արեւմուտք» բարդութեամբ. Հռփսիմեանց տօնին Օրհնութիւն շարականը* ԱՆՁԻՆՔ*ով սկսած, որուն երգողը Կոմիտաս կաթողիկոս կը համարուի*[8]*, ունի տեղիքներս. Ի տուն. «Արեւմուտք (Հռոմ) յԱրեւելս (Վաղարշապատ) ընթացեալք հասին»: Բ տուն. «Բարունայն հրամանաւ... (Կուսանք) յԱրեւմտից յԱրեւելս եկեալ հասին»:*

*Ինչպէս հոս «Արեւմուտք» Հռոմ կը մատնանշէ, նոյնպէս պէտք է իմանալ «Ի Մտիցն արեւու»: Թէ ճիշդ է այս իմաստը, կը հաւատարմացնէ Երգը, որ Աշոտի հեղինակութիւնն է. հոս Աշոտ պատրիկ ինքզինքը Աստուծոյ կը ներկայացնէ. «Որդի Ծառայի Քո».*

---

8 *Կիրակոս Գանձակեցի, էջ* 30:

Որդին Աշոտն է, Ծառայն Պապը, եւ Քո՝ Աստուած: Ծառայ Աստուծոյ կը կոչուէր Հռոմի պապը. այս պատճառաւ ալ շնորհակալ կ'ըլլայ Աշոտ Աստուծոյ, որ Ան զինքը «ի Հռոմայ գահիցն» վերապատուած է, առաքմամբ Փրկչական Պատկերին, այն գահազարդ քաղաքէն, «ուր եդին զՎէմն հաւատոյ հիման սուրբ Եկեղեցւոյ[9]»:

670—681 տարիներու Հռոմի պապերն են.

| | |
|---|---|
| Վիտալիանոս | 657—672 |
| Ադէոդատոս | 672—676 |
| Դոնոս | 676—678 |
| Ագաթոն | 678—681 |

Ուշադրութեան արժանի է, որ 677/8 տարւոյն արաս Գրիգոր Ջորոփորեցի կը թարգմանէ Հռոմի Սեղբեստրոս պապի Վարքը: Աւելի կանուխ՝ 663 յուլիսին Կոստանդին կայսր առած հետը հայ զօրականներ կ'այցելէ Հռոմ, կը մնայ հոն իբր 10 օր եւ անկէ կ'անցնի Սիրակուսա, ուր ապա կը սպանուի (668, յուլիս 15) եւ զօրքը կայսր կը հռչակէ Մժեժ Գնունին (սպանուած 669):

Տեսանք վերագոյն, թէ «Բարձրացուցէք» ճառին Նախադրութեան մէջ այս ճառին հեղինակ կը ներկայացուէր Դաւիթ Հարքացի. բայց թէ ո՞ւր խօսած է Դաւիթ այս ճառը, այս մասին կարծիքները զանազան եղած են:

---

[9] Այս տունը կը գտնեմ կրկնուած Ս. Խաչի Նաւակատեաց Օրհնութեան շարականի մէջ. «ի վերայ Վիմի հաւատոյ շինեցեր զքո սուրբ Եկեղեցի»:

Բայց այժմ, երբ գիտենք որ Դաւիթ Հարքացի երկար ժամանակ բնակակից եղած է Աշոտ պատրիկի հետ, անոր ոստանին մէջ, կրնանք ենթադրել, թէ ճառս խօսելու պատեհագոյն առիթն էր Դարինքի եկեղեցւոյ Նաւակատիքը, երբ փրկչական Պատկերն ալ կը զետեղուէր նոյն եկեղեցւոյ մէջ։

Ցիշեալ Նախադրութեան մէջ յառաջ կը բերուէին երկու կարճառօտ թուղթեր, փոխանակուած «Գիւտ» կաթողիկոսի եւ Դաւիթ փիլիսոփայի մէջ։ Եթէ հարազատ են այս թուղթերը, ինչպէս կ'երեւան, «Գիւտ» անունը պէտք է ուղղել «Իսրայէլ» կամ «Սահակ»։

## Թ. ԱՇՈՏԻ ՄԱՀԸ ԵՒ ԴԱՒԻԹԻ ԳԵՐԵԶՄԱՆԱԿԱՆԸ

Մուաւիայի մահէն ետքը ամիրապետ եղաւ անոր որդին Եզիտ (680—683 նոյեմբեր)։ Իր օրով ծագեցաւ երկրորդ ընտանեկան պատերազմը, որ տեւեց մինչեւ 702։ Այս միջոցին (681/2) Հայք, Վիրք եւ Աղուանք դադրեցուցին հարկել Արաբներուն։ 685ին արշաւեցին Խազիրք Հայաստան, Վրաստան եւ Աղուանք. որոնց ճակատին մէջ ինկան այդ աշխարհներու իշխանները (685, օգ. 16)։ Թշնամիները «ապատակ սփռեալ ի վերայ աշխարհիս՝ առին զբազում գաւառս եւ զաւանս. եւ առեալ զաւար եւ զգերութիւն գնացին յաշխարհն իւրեանց» (Ղեւոնդ, 15—16)։ Նոյն տարւոյն սեպտեմբերին վախճանեցաւ Կոստանդին Դ. Պոգոնատոս եւ յաջորդեց

16ամեայ բախուկն Յուստինիանոս Բ. 685—695). նոյն տարւոյն ալ ամիրապետ եղաւ Աբդլ-ալ-մելիք (685—704): Հայաստանի իշխան կարգուեցաւ այս անգամ Բագրատունի մը, Աշոտ պատրիկ, իբրեւ յաջորդ Գրիգոր Մամիկոնեանի: Հայաստան թալանուած էր Խազիրներէն. այժմ թալանել սկսան Յոյներն եւ Արաբները: Ղեւոնդ կը գրէ «Ի Դ. ամի իշխանութեան նորա (Աշոտի) գունդ մի ասպատակութեամբ յորդւոցն Իսմայելի յարձակեալ ի վերայ աշխարհիս Հայոց (Պարսկաստանէն գալով). որք էին որդիք յանցանաց եւ զաւակ անօրէնութեան. գործէին զանօրէնութիւն յաւանս Մարաց ի Խրամ, ի Ջուղայ եւ ի Խոշակունիս...: Ազգ եղեւ առ իշխանն Աշոտ համբաւ չարութեան նոցա. եւ վաղվաղակի հրաման տայր զօրուն ելանել ի վերայ նոցա: Հարին զամենեսեան սատակմամբ սրոյ. եւ զմնացորդսն փախստական առնէին: Իբրեւ ետես խորամանկ որդին սատանայի զհէնն ի վերայ իւր սաստկացեալ՝ հրաման ետ զօրաց իւրոց զգանձն ժողովեալ՝ ցրուել ի դաշտին առաջի զօրացն Հայոց: Եւ նոցա անխորհրդաբար դարձեալ յաւարն՝ թուլացան ի հետոց նոցա: Բայց միայն իշխանն Աշոտ սակաւ արամբք պնդեալ երթայ զկնի նոցա: Եւ զօրացեալ թշնամեացն՝ դարձան ի վերայ նոցա. եւ հարեալ վիրաւորեցին զիշխանն Հայոց: Ապա ճիչ բարձեալ զօրացն եւ նոքա վաղվաղակի հասեալ ածէին զիշխանն ի Կոգովիտ

կարեւէր խոցմամբն. որ ի նոյն մահիճս վախճանեցաւ փառաւորապէս. եւ թաղեցաւ ի կայս հանգստեան իւրոյ ի գեւղն Դարիւնս» (էջ 16—17)։

Զարմանալի է, որ Յովհաննէս կաթողիկոս իր Պատմութեան մէջ որ եւ է յիշատակութիւն չէ ըրած Աշոտի մասին. այս լռութիւնը ենթադրել կու տայ, թէ այդ պատմագրքին մէջ պակաս մը կայ։ Ստեփանոս Ասողնիկ ինձ անծանօթ աղբիւրէ մը կը քաղէ տեղիքս. Աշոտ «սպանաւ ի պատերազմին. իսկ ոմանք ի Հայոց իշխանացն անձնատուրք եղեն առ զօրս Հայոց». այսպէս Ձեռագրին մէջ, տպագիրն ունի «Տաճկաց» (էջ 100)։ Եթէ «ի Հայոց իշխանացն» կարդանք «յորդւոցն Իսմայէլի» կամ «Հագարացւոց», պիտի համապատասխանէ Ղեւոնդի մտաց. իսկ եթէ «Հայոցն» Տաճկաց իմանանք, պիտի հետեւի թէ հայ իշխաններէն ոմանք Աշոտի դէմ դաւաճանութիւն խորհած են։

Աշոտ վախճանեցաւ 688/9ին։ Իր հերոսական մահը երգած է Դաւիթ, որ այն ժամանակ կը գտնուէր Աշոտի ոստանին մէջ։ Իրեն հետ նոյն կը համարիմ այն «Դաւթակ» քերթողը, որ կը յիշուի Աղուանից Պատմութեան մէջ իբրեւ հեղինակ Ջուանշիր իշխանի գերեզմանականին։

Ջուանշիր վիպական անձ է եւ իր պատմութիւնը՝ վիպասանութիւն։ Վիպագիրը, որ գրած է այդ վէպը, ձեռքի տակ ունեցած է պատմական աղբիւրներ, անոնց թուին մէջ

նաեւ Աշոտի վարքը, որոնցմէ օգտուած է ոչ թէ պատմութիւն գրելու, այլ վէպ հիւսելու: Այդ վէպին մէջ հիւսած է նաեւ Աշոտի մահուան դրուագն եւ Դաւթի Գերեզմանականը, որոշ փոփոխութիւններով եւ յապաւումներով:

Այստեղ յառաջ կը բերեմ այդ Վիպասանութենէն տողերս, որոնք Ագաթանգեղոսի (Խոսրովի սպանութիւնն) եւ Աշոտի վարքը աղբիւր ունին.

«Իսկ անօրէն սպանողն զսուսերն թերաքամեալ ունելով՝ յանկարծակի յետուստ կողմանէ հարկանէր գլխանն արի սաստիկս վիրաւորեալ... յերկիր ընկենոյր զիւր տէրն...: Եւ ահա անդուստ ուրեմն իրազգած լեալ իրացն եղելոց՝ զոյժ ազմկի խռովութեան հնչէր եւ կաճառ ամբոխին բազմանայր». դաւաճանը «փութայէս հեծեալ յերիվար փախստական լինէր»: Գունդ մը զօրաց կը հետապնդէ փախստականը. «եւ ինքեանք ողորմագոչ արտասուօք անդրէն դառնային, լային գիշխանն եւ աշխարէին: Այլ գի դեռ չունէ նորա ի նմա կայր, ասէր ինչ աւուրս ունէր կենդանի. եւ որդւոց իւրոց իւրաքանչիւրումն զգանձս եւ զպատիւս յայտ առնելով կարգէր գնոսա ի բաժինս նոցին. եւ ի դժնդակ վէրացն պակասեալ վախճանէր:

«Յայնմ ժամանակի ոչ սակաւ խռովութիւն լինէր աշխարհիս. գի կուտեալ գինեալ խուռն կաճառացն եւ մեծամեծ նախարարացն ժողովեալ եւ ամենայն երկիրն առհասարակ

վայլուք լի եղեալ՝ ողբային գիշխանն կականաւոր եւ գժնդակ գոչմամբ, որ այնպէս անտանելի սուգ եւ անհնարին բեկումն աշխարհիս հասոյց:

«Յայնժամ ճարտասան ոմն ի մէջ անցեալ, որ տեղեակ էր արհեստական իմաստից, Դաւթակ անուն կոչեցեալ, (եւ) արժանական վարժիւքն յաջողակ եւ վերծանական քերթութեամբ յառաջադէմ. որ եւ առատաբար ի բանիցն պաճուճանս ճշմարտիւ էր քաջապէս հրատարակող, լեզու ունելով նման երագագիր գրչի: Սա յոլովիւք աւուրբք ժամանեալ յամէր ի դրանն արքունի: Արդ իբրեւ հասանէր օրհասական շշուկն ի վերայ արեւելից աշխարհիս սակս յանկարծահաս սպանմանն մեծի զօրավարին, յայնժամ սկսաւ նա երգել ըստ աղփաբետաց գլխակարգութեանց զողբս զայս ի վերայ բարեացապարտն Ջիւանշիրի. եւ ասէ այսպէս զոր օրինակ (Բ. 34):

«Աստուածային բանին արուեստաւոր հոգի...» (Բ. 34—35):

Դաւթակ քերդողի այս Դամբանականը հրաշակերտ մըն է, նուիրուած նախագահ իշխանի մը հերոսական մահուան:

Այդ իշխանը չէր կրնար Ջուանշիր ըլլալ, որովհետեւ ան լոկ վիպասանութեան մը հերոսն էր. եւ այդ հերոսի խոհերական աբարքը չէր կրնար քերդողն ոգեւորել երգելու անոր գովքը այնքան ջերմօրէն:

Դութակի քերթուածքը կ'ենթադրէ պատմական յարգելի անձնաւորութիւն, որուն ազնուական կեանքը եւ տարաժամ եւ եղերական մահը ընդհանուր կսկիծ առթած է ծանօթի եւ անծանօթի: Ան ամէն տեսակէտէ գովելի է.

«Հովիւ բարի» է, «աշտարակ բանաւոր», որուն «պհնարիմաց զօրութիւն եւ գհանճարեղ իմաստն հանդիսաւոր հնչմամբ գովեցին տիեզերք»: «Մարգարտաշար էին յեռեալ բանք բերանոյ նորա, եւ մաքրափայլ կեանք վարուց նորին»:

«Տեարք տոհմից եւ իշխանք ամենայն երկիւղիւ եւ սիրով հնազանդէին նմա»: «Թագաւորն Յունաց եւ իշխանքն Հարաւոյ տենչանօք խնդրէին տեսանել զնա. եւ յոգնամեծար ողջունիւ ընդունէին եւ փառօք պատկեալ պատուէին մեծապէս:

Ընտանասէր էր. ուստի եւ «սիրով քո այրին սիրելիք քոյին եւ զսէր քո անմոռաց ի մտի ունին»:

Այսպիսի նկարագրով անձ մըն էր Է. դարու իշխաններու մէջ Աշոտ պատրիկ Բագրատունի Հայոց իշխան, զոր կը նկարագրէր Ղեւոնդ երէց, ինչպէս տեսանք. այսինքն՝ «Այր երեւելի եւ նախամեծար ի մէջ նախարարացն Հայոց... ճոխ եւ պերճ յիշխանութեանն, եւ յամենայն վարս երկրայինս զգաստ եւ առաքինասէր, եւ ազնուական քան զամենեսեան եւ ծանօթ երկիւղին Աստուծոյ

եւ հոգարարձու ամենայն բարեգործութեան, փոյթ յուսումնասիրութեան...»:

Դաւթակ իշխանին մահուան պարագաներու մասին ակնարկութիւն կ՚ընէ. «Ջանգիւտ կորատեան փորեցին խորխորատ... հոգի մոլորութեան շնչեաց ի նոսա եւ ի նանիր թաքուցին զորոգայթ մահու... խիղախեցան ի վերայ քո որդիք ծառայիցդ»*:

Նկատի պէտք է առնել, որ վիպագիրը ուրացնելով Դաւթակի Դամբանականը եւ զայն իբրեւ ի մահն Ջուանշիրի ներկայացնելով, պէտք է անոր բովանդակութիւնը յարմարցնէր վիպասանութեան փոփոխելով, կրճատելով եւ յաւելուածներ ներմուծելով: Ինչպէս Դամբանականէս տեղիքներ առած էր վէպին մէջ, նոյնպէս վէպէն տեղիքներ ներմուծուած են դամբանականին մէջ: «Խիղախեցան ի վերայ քո որդիք ծառայիցդ», հաւանօրէն իմանալու է «որդիք Հագարու»:

Աշոտ պատրիկ եղաւ աւպնջականը Դաւթի եւ անոր պաշտպանը. ուսումնասէրը յարգեց իմաստասէրը, Դաւիթ «յոլովիւք աւուրբք ժամանեալ յամէր ի դրանն ար–

* Այս տեղիքները առնուած են Ս. Գրքէն.

ա. «Ջանգիւտ կորատեան փորեցին խորխորատ». Սաղմ. ԾԶ. 7 «փորեացին առաջի իմ խորխորատ»:

բ. «Հոգի մոլորութեան շնչեաց ի նոսա». Ես. ԺԹ. 14. «Տէր խառնեաց նոցա ոգի մոլորութեան: Ես. Խ. 7. «Ոգի Տեառն շնչեաց ի նա»:

գ. «Ի նանիր թաքուցին զորոգայթ մահու». Սաղմ. ԼԴ. 17.

դ. «Խիղախեցան ի վերայ քո որդիք ծառայիցդ». «Որդիք ծառայից». Հմմտ. Սաղմ. ՃԱ. 29:

քունի», իմացիր Աշոտ պատրիկի եւ իշխանի ապարանքը: Եւ եթէ կ'ըսուի, թէ Աշոտ «պարզարէր գեղեցկագոյն Աստուծոյ վարդապետական արուեստիւք եւ պաշտօնէից խմբաւորութեամբ», առ այս իրեն օգնական ունէր Դաւիթ իմաստասէրը, որ կը դասախօսէր խմբուած պաշտօնեաներու: Կը հրճուէր իշխանը ուսուցչապետին եւ ուսանողներու ներկայութենէն, բայց դուրսը կային մոլեռանդներ, որոնք կը կրճտէին ատամները «հոռոմ» ուսուցչապետին եւ անոր վարդապետութեան դէմ: Դաւիթ կարող էր ըսել իր ժամանակակցին, Անանիա Շիրակացւոյ հետ. «Ոչ ոք եղեւ շնորհակալ եւ մեծարող իմոյ աշխատութեան. քանզի եւ ոչ սիրող իսկ է ազգ մեր իմաստից եւ գիտութեանց, այլ ծոյլք են եւ ձանձրացողք» (Անանիա Շիրակացւոյ Մատենագրութիւնք, էջ 209):

Երբ վախճանեցաւ Աշոտ (688/9), հալածեցին ժամանակակիցք Դաւիթը իբրեւ հոռոմ եւ քաղկեդոնական: Առաքել Սիւնեցի ինձ անծանօթ աղբիւրէ մը առած կը գրէր. թէ Հայերը «անարգեցին զնա եւ զրանս նորա. եւ հարեալ վիրաւորեցին զնա. եւ նա գնացեալ ի Վիրս եւ անդ կացեալ վախճանեցաւ»: Այս տեղիքը կը պատշաճի Դաւթի, եթէ «ի Վիրս» կարդանք ի «Յոյնս»: Դաւիթ եկած էր Յունաստանէն, պիտի վերադառնար նոյն տեղ:

Արդեամբք ալ կը գտնենք զինքը 712—718 Կ. Պոլիս:

## 10. ԴԱՒԻԹ ԴԵՍՊԱՆ

Յովհ. աւագերէցի ժամանակագրութեան տեղիքս[9] «ՃԼԵ (686) «Դաւիթ-երեր զԹուղթն կայսեր ի Դվին եւ ժողովեցան առ Սահակ եպիսկոպոսք եւ զԴաւիթ պայլեցին» (կարդա՞լ կոչեցին), մեզի նոր լոյս մը կը ծագէ, Դաւթի կենսագրութեան համար:

Թէեւ կանոնի Թագաւորաց եւ կաթողիկոսաց Թուերը խառնակ են, բայց Հայոց Թուականը ՃԼԵ (կարդա՛ ՃԼԷ 689) կը համաձայնի Յուստինեանոսի (Բ.) Թագաւորութեան Դ. տարւոյն:

Առանց տարակուսի Դաւիթ ուղարկուած է Յուստինիանոսի Դ. տարւոյն, երբ ան յանկարծակի երեւցաւ Հայոց սահմանի վրայ, ինչպէս կը գրէ Ասողնիկ. «իսկ ի գալ Դ. ամին Յուստինիանոս ինքն խաղացեալ զօրու ծանու՝ եկն ի կողմն մի Հայոց, ի լեառն որ կոչի Արարատակ, եւ յերիս բաժանեալ զզօրս իւր՝ առաքէ ի Հայս, ի Վիրս եւ յԱղուանս. եւ կոչեցեալ առ ինքն զամենայն իշխանս աշխարհացս այսոցիկ. եւ ոչ ի կամաց, այլ ի հարկէ գնացեալ առ նա: Իսկ նորա զոմանս յիշխանացն ընդ իւր առեալ, եւ զոմանց զորդիսն պատանդս խնդրեալ.

[9] Մանր ժամանակագրութիւններ. կազմեց Վ. Ա. Յակոբեան. հատոր Բ. Երեւան 1956, էջ 20:

ընդ որս եւ զկաթողիկոսն Հայոց զՍահակ հանդերձ հինգ եպիսկոպոսօք արգելեալ առ ինքն. *եւ զոմանս յիշխանացն արքունատուր պատարագօք պատուեալ՝ կացոյց աշխարհացն. զՆերսէհ Շիրակայ տէր կոմս Կապոյտերոց՝ Հայոց իշխան եւ զՎարազ<տր>–դատ՝ պատրիկ Էքսարքոս, որ էր երկրորդ թագաւորին, Աղուանից իշխան. եւ* 30·000 *զօր օգնական իշխանացն. եւ ինքն ի Կոստանդինուպոլիս դարձաւ: Եւ Ներսեհ Կամսարական եկաց իշխան Հայոց ամս Դ»* (*էջ* 100—101):

*Յուստինեանոսի* (685—695) *Դ. տարին է* 688/689: *Կայսրը իրեն հետ առած էր, ինչպէս կ'երեւայ, Դաւիթ հիւպատոսական պաշտօնով. զոր կը ղրկէ Հայոց, Վրաց եւ Աղուանից իշխաններու եւ Հայոց Սահակ կաթողիկոսին, իւրաքանչիւրի համար զանոնք դալ իր մօտ. Կաթողիկոսը հանդերձ հինգ եպիսկոպոսներով:*

*Կը համարիմ, թէ Դաւիթ գնաց նաեւ Աշոտ իշխանին եւ «յոլովիւք աւուրբք ժամանեալ յամէր ի դրանն արքունի». ուստի* 688/689*ին: Ներկայ եղաւ Աշոտի յուղարկաւորութեան եւ ապա դարձաւ Կ. Պոլիս:*

## 11. ԴԱՒԻԹ Ի Կ. ՊՈԼԻՍ 712–18

*Դաւիթ այժմ ծերացած էր, արդէն իբր* 80 *ամեայ մը: Իբր* 710*ին Դաւիթ Կ. Պոլիս կը հրաւիրէ Ստեփանոս քահանան եւ քերդողն ի*

*Սիւնեաց աշխարհէն, արտադրելու իր թարգմանութիւնները, իր հսկողութեան տակ. 712—717 տարիներուն, ուստի 5 տարիներու մէջ կ՚օրինակուին չորս հատորներ, ասոնք են.*

1. *Դիոնեսիոս Արիսպագացւոյ գործերը* (712/3).
2. *Ղեւտիկոնի Մեկնութիւնը* (716).
3. *Կիւրեղ Աղեքսանդրացւոյ Պարապմանց գիրքը* (716).
4. *Նեմեսիոսի* («*Գրիգոր Նիւսացւոյ*») *Յաղագս Բնութեան գիրք* (717/8):

*Իւրաքանչիւր հատոր ունի իր յատուկ յիշատակարանը· ասոնցմէ մին միայն, Ղեւտիկոնի թարգմանութիւնը պահած է անաղարտ յիշատակարանին կազմուածքը· միւս երեքը ապա կրած են անծանօթ ձեռքէ նոր խմբագրութիւն, ուր Դաւթի պատուանունն Կեսար եղած է* կեսառ, *իսկ Ստեփանոս ներկայացուած է Սիւնեաց Մովսէս եպիսկոպոսի աշակերտ, եւ Դաւթի թարգմանութեանց աշխատակից կամ թարգմանակից* («*թարգմանեցան ի ձեռն Դաւթի*... կեսառի եւ ի ձեռն *Ստեփանոսի քահանայի եւ քերթողի*, աշակերտի Մովսէսի *Սիւնեաց* եպիսկոպոսի»:

*Ինձ կը թուի թէ Դաւիթ պէտք ունեցած է արուեստաւոր գրիչի մը, որ օրինակէր իր հսկողութեան տակ իր թարգմանութիւնները*

մէկ կամ երկու օրինակներով, որպէս զի տարուին Հայաստան եւ բազմացնելով մատչելի ըլլան քահանաներու եւ քերթողներու: Եւ առ այս հրաւիրուած է իր մօտ Ստեփանոս քահանայ քերթող եւ քաջ գրիչ:

Ղեւտիկոնի Մեկնութեան Յիշատակարանին մէջ կ'ըսուի. «Թարգմանեցան գիրքս Ղեւտականի Թարգմանութեան (իմացիր՝ Մեկնութեան) յաստուածապահ եւ յամեներջանիկ քաղաքս Կոստանդինուպոլիս... ի ձեռն Դաւթի հիւպատոսի եւ կիսարի (կարդա՛ Կեսարի) Թագաւորական սեղանոյ, որդւոյ Եղիայի քահանայի. գրեալ ձեռամբ Ստեփաննոսի քահանայի եւ քերդողի ի Սիւնեաց աշխարհէն»: Ասկէ բացայայտ կը տեսնուի, որ Դաւիթ թարգմանած է (բերանացի°, ի ձայնէ) եւ Ստեփաննոս «գրած» կամ գրի առած է: Այս կերպ թարգմանութիւնը ենթադրել կու տայ, որ թարգմանիչը ծերունի է, դողդոջուն ձեռքով, բայց առողջ աչքով եւ արթուն մտքով:

Իր վերջին թարգմանութիւնն է Նեմեսիոսի Յաղագս բնութեան մարդոյ գործը:

Դաւիթ կը կրէ «հիւպատոս» տիտղոսը. բառս յն. ὕπατος «բարձրագոյն, գերագոյն, առաջին» իմաստն ունի. ապա իբրեւ տիտղոս գործածուած է լատին consul պատուանունին համազօր. այս պատիւը ի զօրու էր երեք տարի[10]: Բիւզանդական շրջանին այս

---

[10] «Գրեցուք թէ զմի տարի կայցէ հիւպատոս

*տիտղոսը կրած են նաեւ փիլիսոփաները, իբրեւ «առաջին, գերագոյն փիլիսոփայ» իմաստով: Կը կարծեմ թէ այս իմաստներով պէտք է իմանալ Դաւթի «հիւպատոս» տիտղոսը, հայերէն թարգմանութեամբ «անյաղթ» եւ դեսպան: Իսկ «կիսառ. (աղաւաղուած «կեսար») թագաւորական սեղանոյ» պատուանուն մըն է (տես էջ* 165) *:*

*Կը համարիմ թէ Դաւիթ վախճանած ըլլայ* 718*էն ոչ շատ յետոյ, հաւանօրէն* 719/20*ին:*

---

*կամ զերկուս կամ զերիս կամ զչորս. եւ ո՞ւր իցեն որոց զտասն անձն կալեալ իցէ զհիւպատին. չիք ոք, չէ ուրեք». Ոսկ. Պաւղ., Բ., էջ* 501:

## ՄԱՍՆ Գ․

# ԴԱԻԻԹ ՀԱՐՔԱՑԻՈՑ

## ՀԵՂԻՆԱԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1․ Դաւթի Հարքացւոյ անյաղթ փիլիսոփայի ասացեալ ներբողեան ի սուրբ խաչն աստուածընկալ ։

*«Բարձրացուցէք զտէր աստուած մեր, մարգարէն ձայնէ, երկրպագեցէք պատուանդանի սրբոյ ոտից նորա*[1]*։ Եւ ես զնոյն ձայնեմ, զՀոգւոյն զնախազգեցութիւնն առբերելով զբանն հրատարակեմ․․․ ։*

Վջ․ *Աստանօր իրաւապէս առցէ բանս զկայ՝ պայծառացեալ եւ պատուական սուրբ նշանիւս ի Քրիստոս Յիսուս եւ տէր մեր․ եւ նմա փառք յաւիտեանս․ ամէն»* ։

Ձեռագիրք․ *Վիեննա*, 2, 195ա—203ա (*ԺԴ․/ԺԵ․ դար*, *Ցուց․* 11)[1]։ 353, 69ա (1325․ *Ցուց․* 806)[2]։ *Պարիս*, 110, 522ա (*ԺԲ*)[3]․ 117, 237ա (1307)[4]։ *Վենետիկ*, 204, 370ա (1215․ *Ցուց․ Բ․* 143)[3]․ 207, 61բ (1341․ *Ցուց․* 168)[2]․ 202, 464ա (1637․ *Ցուց․* 103)[3]։ *Էջմիածին*, 83, 287ա (1664)․ 1407, 235ա (1596)․ 2389, 62ա։ *Երեւան*, *Պետ․ Թանգ․* 862 (*ԺԸ*)։ *Երուսաղէմ*, 1, 77ա (*Ցուց․ Ա․* 31)։

---

[1] *Սաղմ․ ՂԸ․ 5․ «Բարձր արարէք․․․ երկիր պագէք պ․ ոտից նորա զի սուրբ է»*։

Խորագիրք. 1. *Դաւթի Հ(արք)ացւոյ անյաղթ փիլիսոփայի...*: Հ. Յ. Տաշեան լրացուցած է *Հ(եր)ացւոյ*. Ձեռագրէս արտագրող մը 1830 տարւոյն կարդացած է *Հարքացւոյ*: — 2. *Դաւթի անյաղթ փիլ.*: — 3. *Դաւթի անյաղթ փիլիսոփայի Ներքինացւոյ...*: — 4. *Անանուն*:

Հրատարակութիւնք. 1. *Գիրք եւ ճառ հոգեշահ. Կ. Պոլիս* 1722, *էջ* 441—466: — 2. *Գիրք ժողովածոյ ընդդէմ Երկաբնակաց, Նոր Ջուղայ*, 1688, *էջ* 204—260: — 3. *Մատենագրութիւնք Դաւթի անյաղթ փիլիսոփայի, Վենետիկ* 1833, *էջ* 99—119:

ՆԵՐԲՈՂԻՍ Բ. ՄԱՍԸ

*Տօնապատճառներու մէջ առնուած է Ներբողեանիս Բ. մասը՝ Օրհնեալ ես սատուածազարդ — Ամենայն բարեկամի եւ սիրելւոյ դալուստ* (*տպ. էջ* 111—119):

*Կը յիշեմ Վենետիկի Մխիթ. ձեռագրաց հին ցուցակէ մը*

*«Տօնապատճառ Ա.* 275 (*ի վերջն տարբերի*).
*Բ.* 349.
*Գ.* 399.
*Ե.* 212 (*թերի ի մէջն*).
*Է.* 503—517 (*գեղչեալ կամ այլ բան*):

*Մեկն. Առակաց Լամբր. Դ. (կիսակատար): Ի ճառս յայտուփկ պտանին թուղթքն Գիւտայ եւ Դաւթի»*:

ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ներբողեանս ունեցած է Նախադրութիւն մը, ուր կը բացատրուէր, թէ ո՞վ է Ներբողողը, ի՞նչ առթիւ եւ ո՞ւր խօսուած է: Այս Նախադրութիւնը սկզբնագրով չէ հասած մեզի. բայց կան անոր բազմատեսակ խմբագրութիւնները, որոնցմէ մէկ քանին յառաջ բերինք վերագոյն քաղուածաբար: Այս խմբագրութիւնները զանազանելու համար բանաւէր Վարդան Հաղբատացի (իբր 1170ին)[2] մեզի կռուան կու տայ այն տեսութիւնները, որոնք յայտնուած են նկատմամբ տեղւոյն, ուր արտասանած է հեղինակը Դաւիթ: Առոնք են.

1. Աթէնք. Դաւիթ, որ ուղարկուած էր իմաստասիրաց քաղաքս ուսանելու, երբ աւարտեց ուսումը, «ել եկաց ի վերայ աշտարակին, առաջի սրբոյ Նշանին — զի յայն վայր կործանեալ կռոց պատկեր՝ պատուականութիւն խաչին յառաջանայր ի մէջ Աթենացւոցն — ասեն թէ անդ ասաց յուրախութիւն լսողացն եւ ի պատիւ Խաչին:

2. Իսկ այլք ասեն, թէ ի դառնալն յԱթենայ ի Կոստանդնուպոլիս, ըստ օրինացն յու-

[2] Հ. Մ. Զամչեան, Պատմ., Ա., 783—784 այս Նախադրութիւնը կ'ընծայէ Ներսէս Շնորհալւոյ, Խաչի Ներբողին Մեկնիչին. այսպէս նաեւ յաջորդք: Էջմիածնի Թ. 1398, թղ. 379բ—381բ (ԺԴ. դար) ունի խորագրով. «Տեսութիւն սուղ մատւոր վասն Բարձրացուցեացն, զոր արարեալ է Վարդանայ վարդապետի»: Սկզբնաւորութիւնն՝ «Զսկիզբն հաւատոյ մերոյ բարեպաշտութեանս ունիմք ի Լուսաւորչէն սրբոյն Գրիգորէ...»:

*նականաց՝ ընկերակիցքն նորա մեծարեցին զնա յաւուր տօնի Խաչվերացին, ի պատուասիրութիւն տօնախմբութեանն է ասացեալ:*

3. *Եւ այլք, թէ յԵրուսաղէմ, առաջի փրկական Խաչին սրբոյ:*

4. *Եւ ոմանք, թէ յետ դարձին (Սուրբ Խաչի) ի Պարսից:*

5. *Եւ կէսք, (թէ) ի տեղի ինչ անապատի գրեալ՝ ըստ հակադրութեան Երկաբնակաց ընդդիմաբանութեան»:*

*Այս հինգ տեսութիւնները Վարդան Հաղբատացի «ստայօդ պատմութիւն» կը համարի, ուստի եւ անընդունելի եւ զուր ժամավաճառութիւն անոնցմով զբաղիլը:*

*Թ. 2 անտարակոյս Գիրք Էակացը կ'ակնարկէ, ուր կ'ըսուի թէ Դաւիթ ճառս խօսած է Կ. Պոլիս, Ս. Խաչի տօնին, ի ներկայութեան Մարկիանոս Կայսեր: Միւսներու մասին որ եւ է ազբիւր չունիմ ստուգելու, թէ ո՞ր պատճառագիրներուն կը պատկանին: Թ. 3 կարող է հետեւցուած ըլլալ Ներբողին այն հատուածէն, ուր Գողգոթայի վրայ կը խօսուի (էջ 109): Թ. 4 նկատի առած ըլլալու է իբրեւ պատշաճագոյն առիթ Ս. Խաչին գերութենէ վերադարձն յԵրուսաղէմ, որ տեղի ունեցաւ 630ին: Այս տեղ ուշադրութեան արժանի է տարին, որ Դաւթի ժամանակը Է. դարու առաջին կէսին կ'ենթադրէ, չեղելով հասարակաց ժամանակագրութենէն, որոնք Դաւիթը իր ընկերներով Դ. եւ Ե. դարերուն գիտեն:*

*Բանասէր Վարդան Հաղբատացին, որ 1—5 տեսութիւնները «ստայօդ պատմութիւն» նշաւակեց, Դաւթի եւ ընկերներու առաքումն «յուսումն իմաստութեան ի մայրաքաղաքն յԱթէնս» Ս. Սահակի եւ Մեսրոպի հրամանով եղած կ'ընդունի. կը գրէ. «Ուշ եղեալ երանելեացն՝ առաքեն յաշակերտաց անտի ի կողմանս Յունաց... որք ուսեալք եւ տեղեկացեալք՝ թարգմանիչք եղեն հելլենական լեզուին...»: Վարդան աչքի առաջ ունեցած է Կորիւնի Վարքն Մաշտոցի. «Յետ այնորիկ ուշ եղեալ... երանելեացն... յաշակերտացն յուղարկել ի կողմանս... Յունաց. ուր եւ ուսեալք եւ տեղեկացեալք՝ թարգմանիչք կարգէին ըստ հելլենական լեզուին» (ԺԶ. 1—2):*

*Սահակ եւ Մաշտոց իրենց աշակերտներէն երկուքը ուղարկեցին Եդեսիա, որոնք ապա Կ. Պոլիս տեղափոխուեցան: Աթէնք Թ. 2 (եւ իր աղբի՞ւրն) հնարած է, ինչպէս վերայոյն տեսանք, ազդուած Գր. Աստուածաբանի Թուղթէն, ուր իբր 350ին Աթէնք գտնուած հայ աշակերտներու մասին կը խօսուէր: Որովհետեւ այս ըմբռնումը իշխած է Ը. եւ յաջորդ դարերուն հայ մտքերու վրայ, մինչեւ այսօր, պիտի հարցնեմ թէ ո եւ է մէկ հայ մտաւորական պիտի համարձակէ՞ր Սահակի եւ Մեսրոպի աշակերտները Մովսէս եւ Դաւիթ Աթէնք ուղարկել, եթէ իրենց ծանօթ ըլլար Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութիւնը, ուր Մովսէս ան-*

ձայր բարձրաբարբառ կը հրատարակէր թէ ինքն եւ ընկերք Աղեքսանդրիա առաքուեցան եւ այն տեղուան համալսարանին մէջ աւարտեցին իրենց ուսումը: Ինձ կը թուի թէ Դաւիթ Անյաղթի վէպը հիւսուած է Ը. դարու ընթացքին: Եւ վասն զի «Յովհաննու Հայոց կաթողիկոսի ի Յայտնութիւն Քրիստոսի» ճառը «Զգարնանային ժամանակին աւուրսն» սկզբնաւորութեամբ (Գիրք Թղթոց, 85—87) ունի տողերս. «Եւ ըստ նոցունց (Գր. Լուսաւորչի եւ Արիստակէսի) հոգեկիր վարդապետքն եւ թարգմանիչք, որք յԱղեքսանդր(իա) եւ յայլ յայտնի քաղաքս վարժեալ, ոչ աւելիս եւ նորս ինչ թարգմանեցին, եւ ոչ ընկալան եւ ոչ մեզ աւանդեցին» (էջ 88—89), ուր նաեւ Փիլոնէն տեղիքներ կը գտնուին, չի կրնար Ժ. դարէն յառաջ ըլլալ:

## ՍԿԶԲՆԱԳՐԷՆ ՔԱՂՈՒԱԾՔՆԵՐ

Վարդան Հաղբատացի, որ «ստայօդ պատմութիւն» կոչած էր այդ հինգ խմբագրութիւնները, խուզարկելով հին ձեռագիրները «գտի, կ'ըսէ, յօրինակս հինս մերձ առ թարգմանութիւնս (իմացիր Ներսողեանն ի Ս. Խաչ) գրեալ, եթէ Սա (Դաւիթ) էր աշակերտեալ մեծին Մովսէսի քերթողին՝ աստուածեղէն գրոց, ի Հարք գաւառէ, ի Հերեթն գեղջէ, որդի առն բարեպաշտի եւ սիրողի Աստուծոյ, մի յայնցանէ, որ միաբան ընտրեցան յաշակերտութիւն հելլենական

*դպրութեան ; ի ժամանակս Վահանայ, որդւոյ Մամիկոնի, որդւոյ Վարդանայ, եւ ի հայրապետութեանն տեառն [Գիւտի. եւ զկնի Յոհաննայ Մանդակունւոյ] . . . :*

*«Յաւուրս վերադիտողութեան Հայոց տեառն (Անաստասայ) եկին արք ոմանք ի նահանգէն Անտիոքայ ի գեղջէն որ կոչի Աւչին* (°) [2ա]*, որոց անուանքն Կոստանդին եւ Պետրոս եւ Թէոդորէ, խարազնազգեացք, բոկագնացք, պահողք, եւ կեղծաւորք, որոց ծունկք եւ ճակատք տեռեալ էին իբրեւ զուղտոյ [ի ցոյցս մարդկան, որք ասէին ոչ զոլ զՄարիամ աստուածածին, եւ ոչ զԽաչն Աստուծոյ խաչ, այլ զողոց պատժարան] :*

*Յաղագս որոյ հարկեալ ի հայրապետէն, որ մեծաւ ըղձիւք խնդրէր ի սրբոյն տեսանելով զմեծանձնութիւն եւ զկորովութիւն բանիցն եւ զանյաղթ իմաստութիւն նորա, վստահացեալ յառն քաջութիւնն՝ ետ գրել հրամանաւ եւ սիրով ի նշան պարծանաց կաթուղիկէ եկեղեցւոյ եւ ի դիպարանութիւն հակառակացն : Վասն որոյ ունէր ի սկզբան բանին այսպէս գրեալ.*

*«Զառ ի յաստուածուստ պատուեալ սրբոյ քահանայապետիդ ի մեծանձնութենէ ընկալաք զհրաման» . եւ որ զկնի սոցին բանք :*

*Վարդան կը վերջացնէ . «Եւ ինձ՝ բարւոք խորհողացն այսոքիկ բարւոք թուեցաւ պատճառք քան այլոցն» (Ճառքաղ, 38—39) :*

---

[2ա] *Սարգիսեան, Ցուց., Բ.*, 1089 *«Աշլին»* :

*Մենք աւելի ուրախ պիտի ըլլայինք, եթէ Հաղբատացին այդ հին օրինակներու ներկայացուցած բնագիրն կամ բնագիրները անփոփոխ աւանդած ըլլար մեզի: Բայց եւ այնպէս շնորհակալ ենք իրեն նաեւ ծայրաքաղիս համար, որ թոյլ կու տայ սկզբնագիրը մերձաւորապէս վերականգնել.*

*Դաւիթ* էր աշակերտեալ մեծին Մովսիսի քերթողին, յուսմունս աստուածեղէն գրոց, ի Հարք գաւառէ, ի Հերեթն գեղջէ, որդի առն բարեպաշտի եւ սիրողի Աստուծոյ, *որում Եղիա անուն, քահանայ Աստուծոյ: Դաւիթ յուղարկեցաւ* յաշակերտութիւն հելլենական դպրութեանն *ի Կոստանդնուպոլիս.* ի ժամանակս Վահանայ որդւոյ Մագնոսի, որդւոյ Վարդանայ:

*Մովսէս քերթող ծաղկած է է. դարու երկրորդ եւ երրորդ քառորդին, իր 625—680. ունինք իրմէ հռետորական ճառեր եւ պատմական–ճառական գրուածքներ. իր աշակերտներէն կը յիշուին յանուանէ Դաւիթ, Թէոդորոս եւ Ստեփանոս Սիւնեցի: Նախագրութեանս այլ խմբագրութիւններու մէջ կ՚ըսուի թէ Մովսէս քերթողի եղբայրն էր Մամբրէ. այսպէս նաեւ Ստ. Ասողնիկ «Յայսմ ժամանակի Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երրորդ գտեալ ի փիլիսոփայս դառնայր ի Հայս. եւ Դաւիթ աշակերտ Մովսիսի ի Հարք գաւառէ ի Հերետն գեղջէ»* (էջ 80): *Որովհետեւ բայն եզակի է եւ ենթականները երկու, կը կասկածիմ նա–*

*խաղաղութեանս հարազատութեան վրայ։ Աստղնիկի Պատմութեան մէջ եկամուտ տեղիքներ չատ կան. յամենայն դէպս տեղիքիս աղբիւրը Վարդան Հաղբատացւոյ գտած խմբագրութիւնն է. ուր կը պակսի սակայն «Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երրորդ գտեալ ի փիլիսոփայս եւ». հոս «զորմէ ասեն — ի փիլիսոփայս» կը հայի անպատճառ Դաւթի, որ «անյաղթ» եւ «հիւպատո» եւ «եռամեծ» տիտղոսները կը կրէ։ Զեմ մերժեր, թէ Մովսէս չէ ունեցած այս անուն եղբայր մը, բայց ծանօթ է որ այս անուան տակ մեզի հասած երկու ճառերը Ս. Հայրերէ քաղուած գրուածքներ են։ Վենետիկի Մխիթարեանց օրինակին մէջ Դաւթի համար կ՚ըսուի. «Դաւիթ... ի Հարք գաւառէ, ի Հերեթն գեղջէ, աշակերտ Սահակայ եւ Մեսրոպայ. զոր ասեն քուերորդի Մովսէսի քերթողահօրն» (Դաւիթ Անյաղթ, էջ* 99)։ *Այս խմբագրութիւնը սերտիւ կապ ունի Վ. Հաղբատացւոյ գտած օրինակին հետ։ Եթէ ուզենք Աստղնիկ, Վարդան եւ Վենետիկի օրինակը իրարու հետ հաշտեցնել, կը ստանանք.* Դաւիթ փիլիսոփայ ի Հարք գաւառէ, ի Հերեթն գեղջէն, աշակերտ եւ քուերորդի Մովսէս քերթողի· զորմէ ասեն երրորդ գտեալ ի փիլիսոփայս···։ *Այս դէպքին Դաւթի հայրը Եղիա քահանայ կին առած կ՚ըլլայ Մովսէս քերթողի քոյրը։ Դաւիթ կ՚ուղարկուի (Մամբրէի՞ հետ) յուսումն հելլենական դպրութեան։ Քաղաքի*

անունը չէ յիշուած․ բայց մենք գիտենք, որ Դաւիթ ուսած էր Կ․ Պոլիս։ Այս կը պատահի «ի ժամանակս Վահանայ…»։ Ո՞վ էր Վահան. կ'բսուի թէ Մագնոսի որդին եւ Վարդանի թոռն էր։ Այս տեղիքը առ հասարակ իմացուած է, որ Վահան նոյն է Մամիկոնեան Վահան մարզպանի եւ սպարապետի հետ. բայց ան որդի'ն էր Հմայակի, Կարմիր Վարդանի եղբօր, որոնց հայրն էր Համազասպեան։ Այս անպատեհութեան առջեւ կը թուի ինձ, որ Վարդան այն Քաջն Վարդան է, որ 572—574 տարիներուն «Հայոց պատերազմի» սպարապետ ընտրուեցաւ․ ապա ընտանիքով Կ․ Պոլիս ապաստանեցաւ եւ հոն ալ վախճանեցաւ իրր 600ին․ անոր որդին ըլլալու է Մագնոս եւ թոռը Վահան, նոյնպէս Կ․ Պոլիս հաստատուած․ Դաւիթ յանձնուեցաւ Վահանի հոգաբարձութեան։ Թէոփանէս կը յիշէ յամն աշխարհի 6194 (փրկչական 694) Վահան մը, որ Դ․ Հայքը կ'ենթարկէ Արաբացւոց իշխանութեան (Թէոփ․ Ա․, էջ 569, տ․ 18—19)։

Դաւիթ, ինչպէս ցոյց տուինք վերագոյն, 661/2ին Դամասկոս էր, 662/3ին Հայաստան, Աշոտ պատրիկ Բագրատունւոյ ոստանը, Անաստաս կաթողիկոսի օրով։ Ան իր Ներբողին մէջ ունի տեղիքներ, որոնք ենթադրել կու տան, թէ այցելած է Երուսաղէմ, գտնուած է Գողգոթա, տեսած է տեղւոյն եկեղեցւոյ մէջ թագաւորներու եւ մեծատուններու նուէրները։

Թէ Ներրողեանս Դաւիթ Հարքացւոյ է, կը վկայէ Վիեննայի Թ. 2 ձեռագրի վերնագիրը: Նկատմամբ ժամանակի ամէն կասկած կը փարատէ երեք տարի Անտիոքացիներու Հայաստան եկած ըլլալու յիշատակութիւնը, որ պատահած է ընդ մէջ 660—662 տարիներու, երբ Անաստաս էր կաթողիկոսը (660—667): Ստոյգ է որ այս առթիւ կաթողիկոսի եւ Դաւթի մէջ թղթեր փոխանակուած են. այս մասին խօսեցանք վերագոյն: Իսկ այն թուղթերը որոնք պահուած են ինչ ինչ ձեռագիրներու մէջ կից Ներրողեանին, եւ Գիւտ կաթողիկոսի եւ Դաւիթ Փիլիսոփայի անունները կը կրեն, ոչինչ բովանդակութեամբ եւ բառախաղերով պրճնուած, կեղծիքներ են: Անոնց սկզբնաւորութիւններն են (էջ 102—103).

ա. Թուղթ Գիւտայ առ Դաւիթ: Երկնաւորին ցանկացեալ մեծութեան, գտող գանձու եւ աստուածային լրութեան...:

բ. Պատասխանի Դաւթայ: Ջառի յաստուածուստ պատուեալ գերիցս երջանկի, մեծի հայրապետի... զաստուածհրաման խնդիր հարկապանջութեան եկեղեցական գործառնութեան...»:

Վերջնոյս սկիզբը Վ. Հաղբատացի յառաջ բերած է այսպէս. «Ջառի յաստուածուստ պատուեալ սրբոյ քահանայապետիդ ի մեծանձնութենէ ընկալաք զհրաման»:

Երկու թուղթերն ալ մէկ գրչէ ելած են. երկուքն ալ նոյնագիր բառերու յաճախու-

թեամբ, նոյն իսկ Գիւտի ստորագրութեան մէջ: Դարուկէս յառաջ կը գրէր Հ. Մ. Աւգերեան առ այս. «Արդ եթէ հարազատ իցեն այս նամակագրութիւնք, եթէ յայլոց ոմանց իմաստակաց պաճոյճ բանիւք յարմարեալ՝ մանաւանդ նոյնատառիւք ի դէմս Գիւտայ, ես ոչ գիտեմ» (Լիակատար Վարք սրբոց, Ե. (Վենետիկ 1813, էջ 320): Այլուր արտայայտուած է նոյն հեղինակը. «Կայ եւ խրթին գիր համառօտ առ Դաւիթ անյաղթ՝ որպէս խնդիր վասն ճառի սրբոյ Խաչին եւ Պատասխանի նորին ի Դաւթայ. եւ սոցա եւս լաւագոյն օրինակ խնդրելի[3]» (ՆՀԲ. Նախադուռն, էջ 10): Գեր. Սուքիաս Սոմալեան, Quadro della storia ··· (1829), էջ 29—30. եւ Հ. Գ. Զ. Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ 1897, էջ 318—319 եւ 326 ընդունած են աւանդութիւնը միամիտ հաւատով:

Եթէ Դաւիթ եւ Ստեփանոս Սիւնեցի Մովսէս քերթողի աշակերտներն են, մին երէց եւ միւսն կրսեր, կրնանք հետեւցնել, թէ Դաւիթ իր ծերութեան հասակին խնդրած ըլլայ իրեն օգնական եւ գրագիր՝ Մովսէսի աշակերտներէն մէկը, եւ ուղարկուած Ստեփանոս քահանայ, իբր 710ին:

---

[3] Ձեռագիրը, զոր ունեցած է Հ. Աւգերեան, 1784ին կատարուած օրինակութիւն մըն է. տես Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 1089 (Թ. 297, Թղ. 184ա):

## ՆԵՐԲՈՂԵԱՆԸ

*Դուխթ Ներբողեանին բնաբան առած է Սաղմոս ՂԸ. 5 (եւ 9). «Բարձր արարէք զտէր Աստուած մեր. երկիր պագէք պատուանդանի ոտից նորա զի սուրբ է» (9. ի լեառն սուրբ նորա)։ Պատուանդանը Սիոն լեռն է, որ կը թարգմանուի դիտանոց. այդ պատուանդան–դիտանոցը Խաչն է, որուն վրայ Քրիստոս Աստուած խաչուեցաւ։ Այս Խաչին երկրպագութեան կը հրաւիրէ զմեզ Մարգարէն։ Խաչին վրայ բազմած է Քրիստոս. այս քրիստոսազարդ Նշանին երկրպագել կը յորդորէ ճառախօսը։ Թէպէտ փայտ մըն է մեր առջեւ կանգնած, խաչաձեւ, գործիք մը մարդասպանութեան, բայց իմացական առումով այն աստուածախաչ է, գործիք մը կեանքի, կենդանութեան։ Այդ աստուածախաչը պարծանքն է Պաւղոս առաքեալի եւ մեր։ Այդ Խաչը նշանն է Աստուծոյ առ մարդն սիրոյ։ Թէպէտ խաչեալը վար առնուեցաւ, բայց անոր զօրութիւնը Խաչին վրայ մնաց, կը մնայ եւ պիտի մնայ։ Ուստի պիտի մերձենանք ոչ լոկ խաչափայտի, այլ անոր վրայ բեւեռուած Յիսուսի, Աստուածախաչի։ Այս խաչը Եզեկիէլի տեսած քառանիւ կառքն է, Խաչակառքը. անոր վրայ զենուեցաւ մարդացեալ Աստուած, անմահ Աստուած, միշտ կենդանի այս Խաչի մէջ։ Նկատենք զայն հոգւոյ աչքով եւ հաւատանք թէ եւ այսօր անոր վրայ բազկատարած բեւեռուած է Հօր միածին Որդին։ «Ուր խաչ՝ անդ եւ խա–*

*չեալն. եւ ուր խաչ եւ խաչեալ՝ անդ եւ խաչելութիւնն»: Եւ եթէ մենք կը հաւատանք առոր միայն լսելով, հապա որչափ առաւել պիտի ըլլայ մեր հաւատքը, երբ Խաչը մեր աչքերով տեսնենք ի Գողգոթա: Այս տեղ է Ադամի շիրիմը, ըստ երբեմնական աւանդութեան: Ադամի փայտը (ծառը) մեղքի պատճառ եղաւ, Ս. Խաչը առիթ փրկութեան: Հոս ի Գողգոթա թագաւորներ եւ մեծատուններ այս սրբատեղին պճնեցին թանկագին քարերով: Բայց այն առաւել զարդարուած է աստուածային փառքով. այն տեղ են հրեշտակներու եօթնպարեան դասերը: Հրեշտակաց օրհնութիւններուն խառնենք, կ'ըսէ, եւ մեր օրհնութիւնները: Կը յաջորդեն օրհնութիւններ, զանազան աղերսներով խառն:*

*Դաւիթ ծաղկեցուցած է հոս իր հռետորական արուեստը, իմաստասիրական հմտութիւնը, սուրբ գրենական մեկնաբանութիւնները, աստուածաբանական վարդապետութիւնը, իր խոր հաւատքը եւ սրտի բարեպաշտութիւնը: Ունի իր յղացումներու արտայայտութեան համար հարուստ եւ դիւրաթեք լեզու, ճոխ բառամթերք, նորակերտ բառեր, յունաբան ասութիւններ, նաեւ խրթնաբանութիւններ եւ մթար տեղիքներ, որոնք թերեւս լաւագոյն ընթերցուածներով սրբագրելի:*

*Իր իմաստասիրական կրթութեանց ապացոյց կարելի է նկատել տեղիքս.*

*«Բայց ինձ թուի ոչ փոքր ինչ հիանալ ի վերայ անուանցս այլափոխութեան, որ զանազանի ի չորս յեղանակս ·* բնական, սեռական, ձեւական, իմացական: *Եւ է բնականն՝ որ Հոմանունակլի ասի փայտ · իսկ սեռականն՝ յատուկ ինքեան, որպէս կիպարիս · իսկ ձեւականն՝ որ տրամադրի խաչ՝ գործի սպանման. իսկ իմացականն՝ ի վեր քան զբան, աստուածախաչ՝ որ է գործի կենաց: Իսկ ի վերայ ասացելոյս ո՞ ոչ սխրասցի · գործի սպանման՝ եւ նոյն գործի կենաց · եւ հայեցուցանէ առ մահ ձեւ սորա, եւ առ կեանս՝ զօրութիւն սորա: Վասն զի համաբնակից է այնր անկոյ՝ որով մահ, թէպէտ եւ ոչ ըստ սեռի · եւ զօրութիւնակիր այնմ անկոյ՝ որով կեանք, թէ եւ ոչ ըստ բնութեան»* (էջ 105):

*Պատմութեան համար ուշագրաւ է տեղիքս · «Արդ եթէ բանիւ լսիցեալն (այլ ձձ · լսիցեալն) ականատես ասի խաչելութիւնն առ հաւատ, իսկ ուր խաչն· ականատեսի զլխովին՝ զիա՞րդ ոչ յանդիմանակայ անդ խաչելութիւնն հաւատասցի առ ի նոյն հաւատս: Արդ ուրեմն ասելով խաչ՝ աստ իմա(ս)ցի Գողգոթայ, եւ աստէն խաչելութիւնն, աստ զենումն, եւ ի սմին փրկագործութիւնն · զի զագաթն Գողգոթայ տեղի կառափելոյ, եւ Ճիրիմ առաջին մարդոյն է, քանզի բերէ զգագաթն բարձրութիւն սորա, եւ զկառափետղն ձեւ սորա · իսկ*

*զԹադուհին՝ քանզի փայտիւ Ադամայ վիրաւորեցելոյ առ ի նմին իսկ այնուհետեւ անկեալ՝ ի մեռելոյ է ի համարի: Յորոյ վերայ հաստանելով յերկրի երկնայինն Ադամ, զԹածարար զփրկութիւն կամեցեալ նորոգործել աստ Թաղեցելոյ ծառային եւ Հօր յԵբրայեցւոցն ասացեալ: Եւ ամենայն անդ զյաւիտենական բարձեալ բերէ զարդարութիւն. Նմանասեր մարմնով լուծանելով աստ զնորա զհաճեալ զմեղսն, եւ ճաշակելով իբր նայապէս զմահ՝ սպանանելով զնորայն մահ, բարձրացուցանէ զանուանեալն զագաթն զերադոյն երկնից»* (109—110):

*«Յաղագս որոյ... որք զԱստուած սիրել խորհեցան՝ Թագաւորք եւ որք միանգամ ըստ երկրի մասանց ընչաւէտք՝ զարմանալի կամեցեալ ի տեսողսն երեւեցուցանել զսորայս պատիւ, այնու զոր երկիր եւ ծով մատուցանէ մեծութիւն ստացուածոց, քարամբք պճնեցին պատուականօք եւ այլովք պայծառօք պանծալիս վայելչացուցին»* (*էջ* 110):

ԺԱՄԱՆԱԿ, ԳՆԱՀԱՏՈՒԹԻՒՆ

*Մենք տեսանք վերադոյն* (*էջ* 303/14), *թէ Դաւիթ Հարքացի* (*Տարօնեցի*) 660/661 *տարուոյն Դամասկոս էր. հոն էր նաեւ Համազասպ Մամիկոնեան, որ նոյն տարիներուն ուխտագնաց եղած է Երուսաղէմ. կարելի է մտածել, թէ իրեն հետ ուխտաւոր առած ըլլայ նաեւ Դաւիթ եւ այս առթիւ խօսուած ներբո–*

դեանս: Բայց ինձ աւելի հաւանական կը թուի, թէ Դաւիթ, որ Անաստաս կաթողիկոսի եւ Աշոտ պատրիկի օրով Դարինք կը գտնուէր եւ մնաց հոն մինչեւ 688, խօսած ըլլայ Դարինից եկեղեցւոյ շինութեան նաւակատիքին, երբ փրկչական պատկերը զետեղուեցաւ եկեղեցւոյս մէջ եւ եկեղեցին անուանուեցաւ Ամենափրկիչ: Ինչպէս կ՚իմացուի Պատկերին նկարագրութենէն՝ այն Խաչելութեան պատկեր էր, ուր ներկայացուած էր Ս. Կողին խոցումը եւ արեան եւ ջրոյ հոսումը. առ այս ակնարկութիւն կը համարիմ Ներբողեանին տեղիքս.

«Այսուհետեւ հոգւոյ ակամբ՝ իբր աչօք մարմնոյ յայտնապէս նկատելով հաւատացի, իբր թէ այժմիկ իսկ Միածինն Հօր բազկատարած ի սմա բեւեռեալ տեսանիւր, եւ տակաւին իբր թէ ցնցուղ փրկական աղբեւր սուրբ արեանն ի կենսարար տնօրինեցելոյն կողէ այժմիկ իսկ առաջի աչաց մերոց կայլակացեալ՝ հրաշիւք յանճրեւոյթս զրանաւոր երկիրս ոռոգելով փրկագործէ» (էջ 109): Ամբողջ ճառը կը հայի այդ պատկերի նկարագրութեան (էջ 103—111):

Դաւիթ ձեռքի տակ ունեցած է «Բառք Եբրայեցւոց» (Onomastica sacra), ուսկից քաղած է.

Բեթել, տուն Աստուծոյ (113. Վուց, 808):

Գողգոթա. կառափելոյ տեղի (109. Վուց, 880. հմմտ. նաեւ Մատթ. Իէ. 33):

Յիսուս․ փրկիչ (106․ Վուց, 922)։
Սիոն․ դիտանոց (104․ Վուց, 990)։

Franz Wutz, Onomastica sacra, Leipzig 1915.

Հ․ Յ․ Գաթըրճեան, Սրբազան Պատարագամատոյցք, էջ 248, ծան․ 15 կը ծանօթագրէ․ «Դժուարաւ մարդ կրնայ որոշել, թէ զայս մեր պատարագը (Գրիգոր Աստուածաբանի) տեսած չըլլայ Դաւիթ փիլիսոփայ է․ զարուն մէջ՝ երբ որ կը կարդայ (Ներբողեան ի Ս․ Խաչն, էջ 107) սա տողերը․ «Մշտնջենական եւ ոչ առժամայն զենումն․․․ ի Տեառնէ խսկ հրամանատրեցաւ»։

Հ․ Մ․ Աւգերեան, Լիակատար Վարք սրբոց, Ե․, էջ 320, կը գրէ գնահատական տողերս․ «Ճառ Խաչին է գերապանծ եւ վսեմ յօրինուած աթենական ոգւոյ ցուցակ․ յորմէ իմանամք, թէ եւ այլ բազմադիմի գործք երանելւոյն Դաւթի եւ ընկերաց նորա պարտին լինել, որք այժմ չերեւին»։

Նոյն․ «Ս․ Դաւթի անյաղթ փիլիսոփայի Հարքացւոյ կամ Ներգինացւոյ, յաչակերտութենէ սրբոց Թարգմանչաց, Ճառ պանծալի եւ վսեմ ի սուրբ Խաչն․․․ ուր կան եւ հետք հելլենաբանութեան» (ՆՀԲ․ Նախադուռն, էջ 9)։

«Ներբողեան․․․ որոյ իմաստիցն վսեմութիւն զներքին առատագեղ հանճար Ներգինացւոյն ցուցանէ» (Ցառաջաբան Վենետ․ հրատ․, էջ 8)։

Մ․ Գարագաշեան (Քննական Պատմու–

*Թիւն Հայոց, Թիֆլիս* 1895, *Դ.* 55), *որ Դաւթի ժամանակը Ը. դար կը համարի, անարդարացի կը դատէ, երբ կը գնահատէ. «Բարձրացուցէքն ոչ թէ գործ է Անյաղթ փիլիսոփայի՝ այլ յետին գործ ադէտ իմաստակի անհեղեղ ոճով եւ լեզուաւ»:*

ԵՐԿԱՅՆԱԿԵՑՈՒԹԻՒՆ

*Ներրողս կը տեսնենք յաջորդ դարերուն բազմաթիւ հայ մատենագիրներու ձեռքը, որոնք կարդացած են զայն եւ ազդուած անկէ, ինչպէս կը հետեւցնենք անոնց գրուածքներէն, ուր թէ փոխառութիւններ կան եւ թէ լեզուական ինչ ինչ առութեանց իւրացում: Ներրողս առնուեցաւ Ճառընտիրներու, Տօնամակներու եւ Տօնապատճառներու մէջ: Մենք տեսանք, թէ որպիսի տեսութիւններ յայտնուած էին Ներբողեանիս հեղինակի, պատճառի եւ տեղւոյ մասին: 1170ին խնդրեց Վարդան Հաղբատացի Ներսէս Շնորհալիէն Ներբողիս Մեկնութիւնը*[4] *եւ Ներսէս Լամբրոնացի տաղաչափեց Ներբողեանս*[5]*:*

*Կը յիշեմ հոս անուններն այն հեղինակ–*

---

[4] *Մեկնութիւն բանիցն Դաւթի անյաղթ փիլիսոփայի ի բանն որ ասէ. Բարձրացուցէք...: Արարեալ ի տեառնէ Ներսիսէ Կլայեցւոյ Հայոց Կաթողիկոսէ,* *Էջմ.* 1409, *թղ.* 269*բ* (1290): 1460, (1311)*. ակէ Վիեննա,* 971, 157*ա* (1690): *Հրտ. Ծուաքաղ,* 1861/2, *Յաւել.,* *էջ* 39—40*. չարունակութիւնը ընդհատած:*

[5] *Ակինեան, Ներսէս Լամբրոնացի, Վիեննա* 1956, *էջ* 226—229: *Հրտ. Ներսէս Շնորհալւոյ չափաբերականք, Վենետիկ* 1830, *էջ* 231—263:

*ներու, որոնք գտնուած են Ներքոդեանի ազդեցութեան տակ.*

*Յովհաննէս Օձնեցի, Յաղագս Կարգաց Եկեղեցւոյ*[6].

*Թէոդորոս (Քոթենաւո՞ր), ի Ս. Խաչն*[7].

*Միսայէլ եպիսկոպոս, ի Ս. Խաչն*[8].

*Անանիա Նարեկացի, ի Կաթողիկէ եկեղեցի*[9].

*Գրիգոր Նարեկացի.*

*Ստեփանոս Ապարանեցի, Տարական*[10].

*Յովհաննէս Երզնկացի, Մեկնութիւն Մատթէի*[8]:

2. Դաւթի փիլիսոփայի Բան հաւատոյ ընդդէմ հերձուածողաց:

*Պատրաստեցէք տալ պատասխանի, ասէ համարձակագոյնն յառաքելոյն Պետրոս, ամենայն խնդրողացն բանին, որ է վասն յուսոյն ձերոյ: Եւ այս ոչ միայն փոյթ զհեղգացելոցն զարթուցանել միտս...:*

Վջ. *զայնպիսին խորհողս նզովէ կաթուղիկէ եկեղեցի եւ մեք. եւ եղիցի նզովեալ:*

---

[6] *Հ. Գ. Աւետիքեան, Բացայայտութիւն Տարականաց, Վենետիկ* 1814, *էջ* 519:

[7] *Հ. Գ. Զարբ., Պատմ. հայ. Դպրութեան*, 1897, *էջ* 471:

[8] *Հմմտ. Դաւիթ*, 109 = *ՆՀԲ. ը. բ. Կայլակնաամ*:

[9] *ՆՀԲ. ը. բ. սաքրիմ*:

[10] *Աւետիքեան, անդ*, 519. *«բազում բանք շարականիս առեալ են ի Բարձրացուցէք ճառէ Դաւթի Անյաղթին»*:

Ձեռագիրք· *Բերլին*, 31, 262ա (1657· *Ցուց· Քարամեանց*, 24: Oxford, 69, 200բ (1394· *Ցուց*· 160)[11]:

*Հրտ· Գ· Վ· Յովսէփեան*, *Արարատ*, 1906, էջ 261—268:

*Գրութեանս մասին տես վերը էջ* 84—85:

3· Բան հաւատոյ Դաւթի անյաղթ փիլիսոփայի ամենայն ուղղափառութեան, ի մարմնաւորութիւնն Քրիստոսի եւ ընդդէմ ամենայն հերձուածողաց:

*Բանն Աստուած կատարեալ՝ մարմնացեալ· կատարեալ մի անձն՝ Աստուծոյ միջնորդ եւ մարդկան: Խոստովանիմ մի անձն որպէս կոչումնդ ի վերայ ընդ մեզ Աստուածդ կարդացեալ եւ զայն...:*

*Լազարեան ճեմարանի Թ·* 106, *Թղ·* 23ա—49բ (*ժէ*):

*Ասկէ կոչում մը Վարդան Այգեկցիէ իր «Համառօտ հաւաքումն վարդապետաց յաղագս Ս· Երրորդութեան» ժողովածոյքին մէջ·*

Ի հաւատոյ ճառէն Դաւթի Հայոց փիլիսոփայի: *Բանն Աստուած կատարեալ մարմնացեալ, կատարեալ մի անձն Աստուծոյ, միջնորդ եւ մարդկան...:* վջ· *Աստուածբանն եւ ընդ մարմնոյն որդի մարդոյ:*

---

[11] *Յիշատակարանները հրատարակուած՝ Խաչիկեան, Յիշատակարանք ԺԴ· դարու, էջ 608 եւ ԺԵ· դարու, էջ 42:*

*Սիւրմէեան, Ցուց. հայ. ձեռ. Երուղ.*, *Թ.* 31, *էջ* 202 (*Ցուց.*, *էջ* 73): *Համ. Մուս. Բորդ.* 31, 140*բ*: *Գալանոս*, *Բ. ա.* 368:

4. Նորին Դաւթի ի հարցմանէ Անաստասու Հայոց կաթողիկոսի:

*Այլ զի քո բարեփառութիւնդ յօժարեաց դաւանութիւն յերկաքանչիւրոցն պահանջել հաւատոյ...:*

Վջ. *զի տեսցուք զնա որպէս եւ Քրիստոս Յիսուս Աստուած մեր. եւ ընդ նմա եւ Հօր եւ Հոգւոյն սրբոյ փառս տայցուք...:*

*Բեռլին*, 31, 268*բ*: Oxford, 69, 205*բ*:

*Հրտ. Ցովսէփեան*, *Արարատ*, 1906, *էջ* 269—270: *Տես վերը*, *էջ* 85:

5. Նորին ի խնդրոյ Աշոտոյ պատրկի:

*Բան զոր հարցանէք, ո՛վ բարեփառութեան հարցափորձող աստուածապահ տէր իմ, թէ զի՞նչ միտք մի բնութիւն ասելն առնէ բան...:*

Վջ. *միայն թէ ոչ հարստահարեսցէ զլսելիս ստութիւնն զճշմարտութեանն պերճացեալ ձեւ:*

Ձեռագիրք. *Բեռլին*, 31, 270*ա*—272*ա* (*Բ. մասը դուրս ընկած եւ Թէոդորոս Դակոնի գրութեան կցուած*): *Օքսֆորդ*, 69, 208*բ*: *Նոր Նախիջեւան*, *Տ. Պօղոս Բեդելեանի սեպհական Քարոզգիրք յամէ* 1401: *Վենետիկ*, *Լուծմունք Պարապմանց Գր. Տաթեւացւոյ*, *էջ* 177—180 (1413. *Ադոնց*, *Քերակ.*

ԼՁ) : Թ. 206, Թղ. 175բ—179ա (ԺԳ. Ցուց. Բ. 164. անանուն) :

Հրտ. Յովսէփեան, Արարատ, 1906, էջ 270—271 (Բ. մասն ինկած) : 1916, էջ 907—909, Նոր-Նախիջեւանի ձեռագրէն լրացուած :

Գրուածքիս մասին տես վերը, էջ 84 :

Հ. Բ. Սարգիսեան, Ցուց. Բ. 164. «Հաւանականագոյնս Դաւիթ Բագրեւանդացին է. եւ ոչ թէ Անյաղթն կամ Ներգինացին» : Հմմտ. նաեւ Հ. Ղ. Ալիշան, Այրարատ, 530 :

6. Դաւթի Հարքացւոյ եւ փիլիսոփայի յիմաստասիրականն եւ յիմաստասիրելի հարցուածս :

Հց. Զինչ է մարդ : — Պխի. Հոգի ի մարմնի կապեալ միջնորդաւ շնչոյ, եւ ի նոյն երկուքն միաւորեալ. սա մարդ ասի եւ Աստուծոյ պատկեր» (Ա—ԽԱ հարցմունք եւ պատասխանիք) : Վջ. որ ըստ ամենից անցանէ մտաց շարժմունս :

= Էջմիածին, Թ. 2679 = Գէ. 102, 146ա—151բ (981) : Անկէ Վենետ. 218, 265ա—269ա (1835, Ցուց. Բ. 282) : Լաղ. 125, 387բ :

Հրտ. Գ. Տէր Մկրտչեան, Դաւիթ Հարքացի, էջ 5—28 = Արարատ, 1902, էջ 939—962 :

Այս գրութիւնը կ'ակնարկէ ՆՀԲ. Նախադրութն, էջ 9. «Հարցուածով պիտառու—

*թիւն ընտիր եւ իմաստասիրական՝ ճշգրիտ հայկաբանութեամբ վսեմագունիւ»*: *Գալուստ Տէր Մկրտչեան կը գրէ. «Ներքեւում հրատարակուած հատուածներից՝ մասնաւորապէս Իմաստասիրական Հարցուածները շատ որոշ գաղափար են տալիս Հարքացու լեզուի եւ փիլիսոփայական կրօնական մտածողութեան եղանակի մասին*: *Միեւնոյն գրչից են եկած թւում ինձ այս Հարցուածները եւ Փիլոնի Թարգմանութիւնները, վերջինները աւելի խրթին, մութ, յունաբան, լինելով տառացի թարգմանութիւն, իսկ առաջինը — Հարցուածները — թէեւ նոյնպէս յունաբան, բայց իբրեւ հայկաբանութիւն շատ աւելի ողորկ, ինքնատիպ եւ կորովի»* (*էջ* 4):

*Այժմ անընդունելի է Տէր-Մկրտչեանի տեսութիւնն թէ Դաւիթ Փիլոնի Թարգմանիչն եղած ըլլայ. բայց ուղիղ է որ Դաւիթ օգտուած է Հարցմանց մէջ Փիլոնէն* (*էջ* 8, 14, 19—21): *Կան հոս բառեր, որոնք գործածուած են նաեւ Ս. Խաչի Ներբողին մէջ. այսպէս. «բոցեղէն ցանկապատեալ» էջ* 13= *Ներբող*. 112: *«Առաջին փայտն* գեղեցիկ եւ քաղցր *պտղոյն՝ մահու եղեւ առիթ*, պատիր *եղեալ աղամածին կուսին», Ներբող*. 112 = *Դաւիթ*, 13. «Պատիրն *տեսակաւ պատրեալ* գեղեցիկ եւ քաղցր *ի ճաշակ»*:

*Օգտուած է անկէ Ստեփ. Սիւնեցւոյ ընծայուած առ եպիսկոպոսն Անտիոքայ թուղթին հեղինակը, Գիրք Թղթոց, էջ* 330

= Դաւիթ, 22: Նաեւ Թովմաս Արծրունի, Պատմ․, էջ 278․ «կոկոզավիզ յինքնահայեաց ամբարտաւանութեամբ նստեալ յամբոցին» = Դաւիթ, 22:

ԺԲ. Հարցման 1—14 տողերը գրեթէ նոյնութեամբ զետեղուած են նաեւ «Նկատումն Արիստոտելի» գրուածքին վերջը, որ հրատարակած է Գ. Տէր-Մկրտչեան, Դաւիթ Հարքացի, էջ 34—39:

7․ Հարցումն Դաւթի իմաստասիրի:

Փրկչական կիրընկալութիւնքն միապէ՞ս իմանին յորովայնէն մինչեւ ցՀամբարձումն, թէ ոչ: — Պատասխանի․ Ոչ զուգահաւասար . . . : վջ․ «Եւ ոչ եւս դառնալոց է յապականութիւն, այս ինքն ի մահ վերստին, ըստ որում բացայայտեաց․ Քրիստոս միանգամ մեռաւ եւ ոչ եւս մեռանի:

Վենետիկ, 206, 31բ—33ա (ԺԳ․ Ցուց․ Բ․ 160): Սարգիսեան, Ցուց․ Բ․ 164․ «Թուի լինել Դաւիթ Քոբայրեցւոյն»: Ադոնց, Բերակ․ ԻԸ:

Գրուածքս այս ձեռագրի մէջ միայն ունինք․ տակաւին անտիպ: Այս տեղ շօշափուած նիւթերու մասին «վիճաբանած են» նաեւ Մամբրէ եւ Դաւիթ․ «Մամբրէ ասէ․ փրկչական կիրընկալութիւնքն բնաւորակա՞ն եւ հարկաւորք, եթէ անբնաւորականք եւ անհարկաւորք: — Դաւիթ ասէ․ Բնաւորականք ասին․ զի մարդ եղեւ ճշմարիտ, այլ ոչ հարկաւորք․ վասն զի յորժամ կամէր՝

*թոյլ տայր մարմնոյն. իջանէր ի կերակուր եւ յըմպել եւ ի քուն, ցուցանելով եթէ յարարածոցս է մարմին եւ յորժամ կամէր վերաբերէր զնա յայնմանէ (Հակաճառութիւնք, էջ 135—146)։ Ուշադրութեան արժանի է, որ նորակազմ բարդութիւնքս* կիրառութիւն *Թէոդոր Քռթենաւորի* (*էջ* 148), կիրընդունակութիւն *Յովհ. Օձնեցիի* (75) *եւ* կիրընկալութիւն *Խոսրովիկի, երեք ժամանակակից հեղինակներու յատուկ են, ուստի Ը. դարու առաջին քառորդին ստեղծուած։ Այս շրջանին կը պատկանի նաեւ գրութիւնս, ընծայուած Դաւթի։*

ՀԱՏԱԿՈՏՈՐՆԵՐ

8. ա. Դաւիթ Հարքացի *ասէ. Քանզի նախաժամանէր Հոգին ի կոյսն քան զյղացումն մարմնոյն...։* վջ. *եւ յանապականին ապականութիւն լուծանի, եւ յանմահին՝ մահ։*

*Էջմ.* 2679, 186*ա*։

*Հրտ. Տէր–Մկրտչեան, Ստեփ. Իմաստասէր, էջ* 15—16 (*Արարատ*, 1902, *էջ* 380/1, *տողք* 179—196)։ *Դաւիթ Հարքացի, էջ* 31։

*Գ. Տէր–Մկրտչեան, ուշադիր կ'ընէ որ տեղիքս Թ. 6ի ԼԸ. Հարցման հետ նմանութիւն կը ցուցնէ։*

բ. Դաւթի Հերտանեցւոյ վասն իւղոյն, զոր արար Մովսէս։ — *Զէթն Քրիստոսի օրհնակեալ է...։* վջ. *եւ նիւթ լուսոյ կայ ի մեզ քան զմիտսն։*

*էջմ*· 2679, 210*ա* :

Հրտ· *Տէր–Մկրտչեան*, *անդ*, *էջ* 32—33 :

գ· *Վարդան Արեւելցի*, *Մեկնութիւն Ծննդոց*, *կը գրէ*, *թէ արարչութեան վեցերորդ օրը «Մարդն եղեւ ըստ ումեմն իմաստնոյ ասելոյն* (*ի լուսանցս՝ Դաւիթ*), *թէ* Ցետ առնելոյն Աստուծոյ զերկինս եւ զերկիր հրատարակէր առ իմանալի զօրսն երկնից, եթէ այլ եւս երեք սեռք մահկանացուք, չեւ եւս եղեալ երկին անկատար երեք սեռք՝ զջրայինս եւ զթռչունս օդայինն եւ զցամաքայինս· յորոց եւ մարդն է· երկինք անկատար, զաշխարհ կոչելով երկին, ի պարունակողէն զպարունակեալն նշանակելով» :

*Վիեննա*, *Թ*· 229, *Թղ*· 22*բ* (*Ցուց*· 593) :

9· Արձանակաև ի մահն Աշոտ Հայոց իշխանին :

*Աստուածային Բանին արուեստաւոր Հոգի*, *յօրինեա՛ իմաստիւ զտխրակա՛ն երգմունս*, *զի սրգալի՛ ձայնիւ անդադա՛ր ողբասցուք ի վերայ դժնդա՛կ կորստեա՛ն մերոյ* . . . :

վջ· *Քեւ զնոտութի՛ւն նորին նո՛ր ուսեալ*
*թէ չունի՛ երբեք ումեք ա՛ստ մնալ*
*քաղցր էր զա՛յս ասել եւ մի՛շտ հեծեծել*,
*բայց քաղցրագո՛յն եւս՝ ընդ քեզ մեռանել* :

Ձեռագիրք· *Պատմութիւն Աղուանից Մովսէս Դասխուրանցւոյ* (*Կաղանկատուացւոյ*), *Բ*· 55 :

Հրատարակութիւն․ *Նոյեան Աղւանի*, 1852, *թ*․ 36—37 (*Ա—Ճ*)։ *Անդ թ*․ 57 (*Ա—Բ*)։ *Ճռաքաղ*, 1860, *էջ* 79—83 (*Ջ․ Մսերեանի վերակազմութեամբ*)։ *Պատմ․ Աղուանից*, *հրտ․ Մ․ Էմինի*, *Մոսկուա* 1860, *Բ*․ 54 (*Ա—Ճ*)․ *հրտ․ Շահնազարեանի*, *Փարիզ* 1860, *Բ*․ 54 (*Ա—Բ*)։

*Ա—Ե տունք գերմաներէն թարգմանու-թեամբ ի գիրս* Narrenberg-Maikl, Literaturgeschichte···, *էջ* 307 (*ինձ անմատ-չելի*)։

*Արձանականս Աղուանից Պատմութեան մէջ*, *Բ*․ 54, *ներկայացուած է իբրեւ ողբ ի մահն վիպական Ջիւանշիր աղուան իշխա-նին*, *Դաւիթ անունը դարձուած է Դաւթակ*։ *Կը թուի թէ Արձանականիս ինչ ինչ տուներէ տողեր կրճատուած են*։ *Շատ ցանկալի է*, *որ արտաքոյ Աղուանից Պատմութեան երե-ւան գար ամբողջական բնագիր մը*։ *Դաւիթ Հարքացի փիլիսոփայ*, *որ օթեւանած էր Բագրատունեաց ոստանը*, *Դարխնից բեր-դին մէջ*, *իբրեւ հիւր Աշոտ իշխանին*, *ար-տասանեց Արձանականս 688ին*, *սեպտեմ-բեր 14ին*, *Ս․ Խաչի տօնին*, *երբ վախճանե-ցաւ Աշոտ իշխան*։ *Այս մասին խօսեցայ վերադոյն*, *էջ* 95—98։

ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

10․ ա․ Իմաստութիւն Դաւթի քերդողի։ *Ջեռք ամենակալին ստեղծին զխս*։ — *Էջմ*․ 2679 (*Գէ*․ 102), 152*ա*։ *Ասկէ*

126, 176բ (ԺԲ) եւ Մ · Էմինի ձեռագիր : Վենետիկ, 218, 289ա (1835 · Ցուց · Բ · 284) :

Հրտ · Գ · Տէր Մկրտչեան, Դաւիթ Հարքացի, էջ 30—31 : Հ · Ղ · Ալիշան, Իմաստութիւն Դաւթի Քերդողի, Բազմավէպ, 1848, էջ 192 եւ էջ 247—250 : Մ · Էմին, Исторія Арменіи М. Хоренскаго, Մոսկուա 1858, էջ 369 : Հմմտ · նաեւ Ճռաքաղ Գ · 1861/2, էջ 134—136 (յանուն Մովսէս Բջնեցւոյ) :

Հանելուկս իր հնութեամբը մէկ հատիկ է հայ մատենագրութեան մէջ · հնագոյն օրինակը անոր հեղինակը Դաւիթ քերդող կ'անուանէ, Մ · Էմինի սեպհական ձեռագիրը «Դաւիթ փիլիսոփայի իմաստութիւն» կը խորագրէ : Մովսէս Բջնեցի իւրացուցած է զայն ինչ ինչ փոփոխութիւններով : Հանելուկս լուծելու փորձ ըրած է Հ · Ղ · Մ · (Ալիշան), Բազմավէպ, 1948, էջ 247—250 :

Թէ հանելուկս Դաւիթ Հարքացւոյ է, կռահել կու տայ վերջին տողը, որ յունաբէն է · ուստի հեղինակը հմուտ էր յոյն լեզուին, ինչպէս Դաւիթ փիլիսոփայ :

Հանելուկս յառաջ կը բերեմ այստեղ իր ամբողջութեամբ եւ միասնգամ փորձ կ'ընեմ լուծելու զայն :

1 Ձեռք ամենակալին ստեղծին զիս ·
2 Բարձրեալն ի բարձանց
ի բարձունս ընծայեաց զիս ·
3 Ձախ հասակի իմոյ երկիցս երկոտասան ·
4 Այժմ եմ երիցս երկոտասան :

5 Յորժամ ծնայ զմայր իմ եւ իմաստնացուցի·
6 Յարեւելս կամ եւ յարեւմուտս խաւսք իմ·
7 Ի հիւսիսոյ ի հարաւ բարբառիմ·
8 Յանշունչս ձայն առնեմ
եւ ի մեռեալս բարբառիմ:
9 Անուն իմ բաղկանայ երիւք տառիւք·
10 Երբեակն ի միակէն,
11 Երկեակն ի տասնեկէն·
12 Եւ հնգեակն ի հազարացն:
13 Ծնունդ իմ ի ջրոյ է·
14 Եւ մահ իմ ի նմանէ·
15 Ի հրոյ զարհուրիմ·
16 Եւ ընդ վիմաւք նստեալ՝
արհամարհեմ զնոսա:
17 Եթէ կարես ճաշակեա,
18 Եթէ չկարես ի զատ կաց·
19 Եւղարբեմա ոխսի:

ՎԵՐԼՈՒԾՈՒՄ

*Տող 1· Ամենակալին ձեռքը ստեղծեց գիր, այսինքն ԳԻՐԸ: Թէ Աստուա՛ծ գրած է առաջին անգամ նշանագիր գիրը, հին աւանդութիւն է, պահուած անվաւերական Ադամ գիրքի մէջ· Ադամի մեռնելէն վերջը կ՚ըսուի թէ Աստուած գրաւոր աւետիքը*

---

[11]*ա Տող 7. Ձեռագիրն ունի «եւ ի հարաւոյ». ուղղեցի Բջնեցւոյ ընթերցուածով: Տող 19 զոր Ալիշան եւ Էմին չունին, պէտք է ուղղել «Եւղարբեմա, ոխսի» այն է յն. εὐλάβημα, ῥίσει· այս ինքն Ուշադրութիւն Հանելուկի:*

տուած է, որ պիտի գայ Որդին Աստուծոյ մարդանալ. այդ գիրը բերին պարսիկ մոգերը երբ ծնաւ Քրիստոս (Անկանոն գիրք Հին Կտակարանաց, Վենետիկ 1896, էջ 46, 51, 294, 304—305)։ Դաւիթ Հարքացի իր Խաչի Ներբողեանին մէջ ակնարկութիւն ունի, թէ ծանօթ է ինքը այդ Անվաւերականներուն, Եբրայական աւանդութիւններուն։ Հաւանօրէն այս տեղիքէն ներշնչուած է Մ. Խորենացի, երբ կը գրէ, թէ Մաշտոցի այբուբենին ձայնաւոր գրերը Ամենակալին, «թաթ ձեռին աջոյ» (Գ. 53) գծագրած է։

Տող 2. «Բարձրեալն ի բարձանց՝ ի բարձունս ընծայեաց գլխ»։ Կ՚ակնարկուի կա՛մ Սինայի լեռան վրայ Մովսէսի տասնաբանեայ տախտակները եւ կամ Խաչի երեքլեզուեան «Սա է արքայն Հրէից» (Ղուկ. ԻԳ. 38)։

Տողք 3—4 կը յիշէ յունական այբուբեր 24 նշանագիրներով, որ հիմը եղաւ Հայկականին։ Հայ Այբուբենը աճեցաւ 12 թուով եւ բարձրացաւ 36ի։

Տողք 5—7. Երբ ծնայ մայրս. այսինքն գրեցի առաջին բառը, որ մայրն է գրերուն, եւ աճեցուցի բառերու թիւը, կարողացայ խորհուրդներս գրաւոր արտայայտել, ի վիճակի եղայ նստած Արեւելք խօսիլ Արեւմուտք, ձայնս լսելի ընել Հիւսիսէն Հարաւ (Թղթակցութիւն, եւ այլն)։

Տող 8. Անշունչ մելանին՝ ձայն եւ մեռեալ մագաղաթին՝ խօսք կու տամ։

*Տողք* 9—12 · *Ըսեմ Ձեզի իմ անունս, որ երեք տառերով է բաղկացած · տառնք են ·*

*Այրուբենի միաւորներէն երրորդը ·* Գ ·<br>
*Տասներորդներէն երկրորդը ·* Ի ·<br>
*եւ հազարերորդներէն հինգերորդը ·* Ր ·

*Տողք* 13—16 · *Ծնած եմ ջուրէն (թանաքէն) .*

*Ինձի մահ կը պատճառէ ջուրը,*<br>
*որ կը սրբէ, կը ջնջէ գրուածքը ·*<br>
*Կրակէն կը վախնամ, որ կ'այրէ գիրք:*<br>
*Բայց քարաշէն գրադարանին մէջ*<br>
*պատսպարուած՝ կ'արհամարհեմ*<br>
*ջուրն ու կրակը:*

*Տողք* 17—18 *թէ հեղինակէ՞ն են, կարելի է կասկածիլ: Իսկ տ ·* 19 Եւղաբոմա (*կարդա՝* Եւղաբեմա) ոխսի *կը պատկանի ընագրին, եւ է յն ·* εὐλάβημα ρίσει, *այն է «ուշադրութիւն հանելուկին»:*

բ · Ծնայ առանց հաւր ·<br>
Եւ կին իմ յինէն.<br>
դուստր իմ ծնաւ զհայր իմ:<br>
գ · Անիծեալ է որբն,<br>
Եւ աւրհնեալ է գինին:

*Այս երկու հանելուկները գտած է Գ · Տէր–Մկրտչեան Թ ·* 2679, *Թղ ·* 152*ա · Նախորդ հանելուկէն յառաջ, անանուն · եւ հրատարակած է կից Դաւիթ քերդողի հանելուկին, էջ* 29:

*Վկայ չունինք, թէ Դաւթին է, բայց կարող ենք վերագրել իրեն: Բ · հանելուկն է*

Աղամ, Եւա, Աստուածածին եւ Աստուածորդին:

11. Նախակարգեալ յառաջաբանք Սաղմոսաց:

ա. Դաւթի փիլիսոփայի Յաղագս Սաղմոսաց Դաւթի: *Արդ առեալ, ասէ, Սամուէլ զեղջիւր իւղոյն եւ օծ զԴաւիթ թագաւոր կատարմամբ:* վջ. *Արդ ամենայն Սաղմոսացս պատճառ ինքն սքանչելի Դաւիթ եւ ի նմանէ այլք պայծառացան:*

Ձեռագիրք. *Վիեննա* թ. 159, 19*բ*—30 (1661. *Յուց.* 464): 357, 39*ա* (1536. *Յուց.* 810): *Վենետիկ*, թ. 7, 223*ա* (1656. *Յուց.* *Ա.* 79): 13, 281*բ* (1635. *Յուց.* 131): 260, 69*ա* (*ԺԶ.* *Յուց.* *Բ.* 809): *Երուսաղէմ*, 428, 256*ա*. *Յուց.* *Դ.* 126):

Հրտ. *Սաղմոսարանին Ս. Դաւթի... Յառաջաբանութիւն Մեկնութեան, Կ. Պոլիս* 1801, *էջ* 71—77:

*Ձեռագիրներու մէջ կ'ընծայուի նաեւ Եպիփանու Կիպրացւոյ, այսպէս Վենետիկի* թ. 1, 252*ա* (1319. *Յուց.* *Ա.* 7): 43, 9*ա* (1629. *Յուց.* 238): 69, 8*բ* (1643. *Յուց.* 315): *Վիեննա*, թ. 71, 285*ա* (*ԺԳ.* *Յուց.* 315):

*Վարդան Բաղիշեցի այս աշխատութիւնը կ'անուանէ «Մեկնութիւն վերնագրաց Սաղմոսին» (Աղօնց, Դիոնեսիոս, էջ ԺԷ):*

բ. Դաւթի փիլիսոփայի Նախակարգեալ առաջաբանք Սաղմոսաց: — *Անպարագիծ*

*տատուածեղէն տառիցն յոգխս արդարոց անձանց . . . :*

գ· Վասն Սաղմոսաց, որ ասին Որդւոցն Կորխայ. Դաւթի փիլիսոփայի ասացեալ:

***Ցարմարի որդւոցն Կորխայ ասել. Որպէս փափաքի եղջերու աղբերաց ջուրց . . . :*** վջ· *Ահա դաւք են երգչացն. եւ այդ էր օրէն երգեցողութեանն:*

*Վիեննա*, *Թ*. 47, *Թղ*. 48*բ*—56*ա* (*Ցուց*. 216—217): *Վարդան Արեւելցի*, *Մեկն*. *Սաղմոսաց*, *ունի* բ· *«Անպարագիծ — դհանդամանս ցուցից»*· *Զմմառ*, *Թ*. 89/11, *Թղ*. 5*բ*—7*բ*:

*Այս գրուածքը կ'ակնարկէ Գրիգոր Արասու որդի Սահմանաց գրոց պատճառին մէջ, երբ Թուելով Դաւթի գործերը կը գրէ. «Արար հինգերորդ եւ* Սաղմոսին պատճառ· *եւ գի ոչ գոյր փափագանօք խնդրող, վասն այն եւ նա ոչ արար գիրք այլ, գի մի նախատեսցի, որպէս յառաջդ ասացաք. ապա թէ ոչ իմաստուն էր առաւել քան գառաւել»* (*Թ*. 47, *Թղ*. 329*բ*. *տակէ Ադոնց*, *էջ ԼԳ*):

*Դաւթի այս Նախակարգեալ յառաջաբանիս մասն է «Ցաղագս Սաղմոսաց» հատուածը, որ պահուած է Սաղմոսաց Նախադրութեանց չարքին մէջ: Զետեղելով դայն պատկան տեղը կը յուսամ թէ կը լրանայ Ցառաջաբանս, եթէ Գրիգոր անդրադոյն կրճատումներ չէ ըրած իր յառաջբերութեան մէջ:*

*Ինչպէս յիշեցինք, «Ցաղագս Սաղմոսաց»*

*հատուածը ինչ ինչ ձեռագիրներու մէջ վերագրուած է Եպիփան Կիպրացւոյ. այս վերագրումը կատարուած է Եպիփանի «Յաղագս Երգոց Սաղմոսարանի» գրուածքին ազդեցութեամբ, որ Նախադրութիւններու շարքին մէջ զետեղուած էր Դաւթի հատուածէն յառաջ. հրատարակուած Հ. Յ. Զօհրապեանի Աստուածաշունչի մէջ (Վենետիկ* 1805, *հատոր Գ.*, *էջ* 1—4):

12. Դաւթի փիլիսոփայի Նախերգան: — *Ունակութիւն Սաղմոսացդ ըստ առ ի Նոր Կտակս Թարգմանութեան. զոր որումն ի հարց է աշխատել. ոմանք ասեն թէ Արայի որումն մեկնչի. եւ ոմանք թէ Եւսեբի Պամփիլեայ:*

*Ա. Յորդորումն յաստուածապաշտութիւն եւ հրաժարումն ի հակառակորդէն. Երանեալ է այր որ ոչ գն՛՛:*

*Բ. Մարգարէութիւն վասն Քրիստոսի եւ կոչումն հեթանոսաց. Ընդէ՞ր խռովեցան...:*

վջ. *ՃԼԶ. Գոհութիւն զկնի մարգարէութեան. Առ գետս Բաբելացւոց...: Եւ Քրիստոսի մարգասիրին փառք յաւիտեանս:*

*Հմմ*, *Վատիկանեան Մատ. Թ.* 3, *Թղ.* 23*ա*—26*բ* (1270. *Տխերանտ*, *Ցուց. էջ* 205. *Մխաքըճեան*, *Ցուց.*, *էջ* 15:

*Մէկ ձեռագիրէ միայն ծանօթ է ինձ Նախերգանքս. ենթավերնագիրն եւ յարակից գիտողութիւնը կասկածելի կը ցուցնեն հեղինակը: Եթէ Ս. Հայրերէն մին է անոր յօրինողը, կամ կը կարծուի թէ Մեկնիչ ար–*

*բայ մը կամ Եւսեբիոս Պամփիւլիացի եղած ըլլայ Սաղմոսաց բովանդակութեան ըստ Նոր Կտակարանի մեկնիչը, ի՞նչպէս կարելի էր զայն Դաւիթ փիլիսոփայի վերագրել:*

*Ձեռագրիս մէջ միայն Ա.—ԾԼԶ Սաղմոսներու «ունակութիւնը» նկատի առնուած է. ըստ յօրինուածութեան շատ նման է «Դաւթի Սաղմոսաց ցանկ»ին, զոր հրատարակած է Զօհրապեան (Գ., էջ 5—12): Այս տեղ յիշեալ Ա. Բ. եւ ԾԼԶ. սաղմոսներու «ունակութիւնը» մեկնուած է այսպէս.*

*Ա. Վասն հաւատոց եւ գործոց եւ յանդիմանութեան ամպարշտաց: Երանեալ է այր...:*

*Բ. Վասն չարչարանաց Քրիստոսի եւ զատ ի հարկէ ծննդեանն եւ վասն հեթանոսաց հաւատալոյն: Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք...: ԾԼԶ. Զատ ի Բաբելոնի պատահումն պատմէ...: Առ գետս...:*

*Ուստի ի հեռուստ նմանութիւններ միայն կը տեսնուին: Այս պատկերի առաջ կարող ենք ըսել թէ Նախերգանս ցուցակին նախաւոր խմբագրութիւնն եղած ըլլայ. վրիպակաւ Դաւիթ փիլիսոփայի վերագրուած:*

ՃԱՌԵՐ

*Գրիգոր Արասու որդի կը գրէր թէ յանուն Դաւիթ Հարքացւոյ «զոն եւ առանձինն այլ ճառեր»: Ճառե՞ր, թէ Մանր գրութիւններ: Իբրեւ ճառ ինձ ծանօթ են հետեւեալները. որոնք շատ կասկածելի են:*

13· Դաւթի փիլիսոփայի Գրուատ գո–վեստի ի Նախավկայն Քրիստոսի ի սուրբ Ստեփանոս:

*Մեծ է որ յիշատակի վկայիս եւ զամե–նեսեան յարուցանէ կոչել ի սպասաւորու–թիւն բանիս . . . :* վջ· *. . . լսել մեզ զբարբառ մեծի եւ աՀաւորին, թէ Եկայք օրՀնեալ Հօր իմոյ . . . :*

Ձեռագիրք· Պարիս, Թ· 118, 291ա—292բ (1307): Անկէ՝ Վենետիկ, 232, 172ա (1857· Ցուց· Բ· 506) եւ Մխինխէն, 11, 98ա (ԺԹ· Ցուց· 27): Անանուն են Վենետիկ, 218, 51բ (1835· Ցուց· 276) եւ 224, 22ա (ԺԹ· Ցուց· 386): Իսկ Պարիս, Թ· 110, 568ա կը կրէ Գրիգոր Նիւսացւոյ անունը:

Հ· Բ· Սարգիսեան, Ցուցակ, Բ·, էջ 506 յառաջ կը բերէ սկիզբէն եւ վերջէն ընդար–ձակ Հատուածներ, ուր կան տողերս· «ի մեծ շահավաճառ աւգտութեանց, որ առաւել փարթամացուցանէ քան զայնոսիկ (որք) զմարգարիտս պատուականս ընծայեն թագա–ւորաց ի ծովավաստակ աշխատութեանց ի պատիւ թագի պարծանաց կազմեալ ի զա–նուց ընտրելոց»: Հեղինակը Ագաթանգե–ղոսի Նախաբանի ազդեցութեան տակ Հիւ–սած է տողերս: Այս ապացոյց կրնայ ծա–ռայել, թէ ճառս Նիւսացւոյ չէ: Բայց նաեւ Հարքացւոյ Հարազատ չի թուիր:

14· Դաւթի փիլիսոփայի ասացեալ Ներ–բողեան յաղագս Վարդավառի:

*Այսօր զուարճալի եւ գերափայլ ճառա–*

*գայթ երեւի մեզ տպաւորութիւն տօնիս լուսաւոր փայլեալ ընդ տիեզերս...: Վջ. եւ ժառանգեսցուք զանդ երանութիւնսն ի Քրիստոս Յիսուս...:*

Ձեռագիրք. *Երեւան*, Թ. 78 *Առաքելոց վանքի ճառընտիր*: *Ասկէ Վենետիկ*, 228, 246ա—249ա (1847՝ *Ցուց*. Բ. 457):

*Ասոր հետ նոյն կ'երեւայ Մովսիսի քերթողահօր Յաղագս Վարդավառի: — Լուսաւոր եւ պայծառ է խորհուրդ մերձաւոր տօնիս եւ տիեզերական ցնծութեան աւետիս հնչեցուցանէ ընդ երկնաւս...:*

Ձեռագիրք. *Պարիս*, Թ. 111, 9ա (ԺԳ): *Երուսաղէմ*, Թ. 1, էջ 800ա (*Ցուց*. Ա. 26):

Հրտ. *Մ. Խորենացւոյ մատենագրութիւնք*, 1843, էջ 326—338:

15. Դաւթի անյաղթ վարդապետի ասացեալ գովեստ ներբողական ի սուրբ Կաթուղիկէ եկեղեցի:

*Վասն որոյ մեր ի մաղթանս հայցեալ, անդադոր առեալ մեր ի սատարութիւն եւ կարգ ըստ կարգի յերդ ի նոյն բանն ընթացուք: Ուրախ լեր խորան լուսոյ. ժամանակ զարնանային ի քեզ ժամանեալ...: Վջ. զիմ փանաքիմաց վերտառութիւնս ընկալ եւ արժանի արա հաղորդել ընդ մաքրափայլ ոսկեզան վերլուծիցն զի սերմարբոյս արմատացեալ ընծուղիմք ի ժամանակս զարնանայնոյ, որ մեծ օրն է տեառնի...:*

Ձեռագիրք. *Երուսաղէմ*, Թ. 282 (1331.

*Ցուց.*, *Գ.*, *էջ* 99—101)։ *Վենետիկ*, 222, 209*բ*—212*ա* (1335. *Ցուց. Բ.* 336)։

Հրտ. *Հ. Պ. Անանեան*, *Բազմավէպ*, 1956, *էջ* 63—69, 89—94. *բնագիր՝* 92—94։

*Երկու ձեռագիրներն ալ մէկ գաղափարօրինակէ օրինակուած են նոյն գրիչէն, որ է Ներսէս Կրակացի։ Սա կը յայտարարէ Թ. 282ի մէջ. «Ով եղբարք, օրինակն երեքիջե(ա)ն էր եւ լիզած. նա կարճ ի կարճոյ գրեցաւ ճառս. կարդա եւ մի մեղադրեր»։ Բայց ես մեղադրելի կը համարիմ, որ նոյն գրիչը Թ. 222ի մէջ ճառս խորագրած է «Դաւիթ անյաղթ վարդապետի* հայկազնի *ասացեալ գովեստ ներբողական ի սուրբ կաթողիկէ եկեղեցի* ի սուրբ Յարութիւնն եւ ի սուրբ Գողգոթայ ի սուրբ քաղաքին Երուսաղէմի». *ընդգծուածները առանց տարակուսի իր յաւելուածներն են. «կարճ ի կարճոյ գրեցաւ» պէտք է իմանալ, որ «լիզած», վնասուած, անընթեռնլի տեղեր եղած են ձեռագրին մէջ, զորոնք դուրս թողած է. կ՚երեւայ թէ ինչ ինչ ընթեռնլի տեղերն ալ ուղիղ կարդացած չէ։ Այս կասկածելիներու մէջ են «անյաղթ վարդապետ». Դաւիթ «անյաղթ փիլիսոփայ» կոչուած է, բայց ոչ երբեք «անյաղթ վարդապետ»։ Ցանկալի է ունենալ աւելի հին եւ ամբողջական օրինակ մը։*

*Թէպէտ ճառիս սկսուածքը տարօրինակ է, նախադասութիւնները անյօդական, բայց կը զգացուի, թէ հեղինակը այս տեղէն սկսած է գրել, ոչ իբրեւ ճառ, այլ Դաւթի ի Ս. Խաչ*

Ներբողին Բ. մասին վերջաբանն: Առ այս երկու հաւաստացեալներու մաղթանքը կը խնդրէ եւ կը ձեռնարկէ «Օրհնեալ»ներու յարատութեամբ գրել իր «Ուրախ լեր»ները կարգ ըստ կարգէ:

Ճառիս առաջին անգամ ուշադրութիւն դարձուց Հ. Գ. Զարպհանալեան, Հայկ. հին դպրութեան պատմութիւն, էջ 324. իր կարծիքն է. «Որչափ ալ ոճոյ նմանութիւն ենթադրենք գտնել այս ճառին եւ իր (Դաւիթ Անյաղթի) անունը կրող ուրիշ երկասիրութեան մէջ[12], բայց հարազատութիւնը միշտ տարակուսական կը մնայ»: Աւելի վճռական արտայայտուած է Հեղինակս էջ ԻԶ, տ. 16—17, ուր յիշելով ճառս, առընթեր գրած է «անհարազատ»: Իսկ ԻԶ, տ. 6—7 նոյն ճառը յիշած է առանց գիտողութեան:

Հ. Բ. Սարգիսեան կը տատամսի տալ իր վճիռը. Ճառս Դաւթի «Խաչի Ներբողին... հետ աղերս եւ նմանութիւն ունի...: Եթէ ստուգիւ Դ. Անյաղթին է ճառս, Խաչի Ներբողեանէն ետքը արտասանուած ըլլալու է, կամ անոր իբր շարունակութիւնը» (Ցուցակ, Բ., էջ 337):

Այս խնդիրը մասնաւոր ուսումնասիրութեան նիւթ առաւ Հ. Պ. Անանեան եւ այս առթիւ հրատարակեց ճառս: Իր ուսումնասիրութեան մէջ դէմ առ դէմ դնելով Ներբողեանին (էջ 117—118) եւ Ճառիս (տ. 74—

12 Կ'ակնարկէ Ս. Խաչի Ներբողեանը:

89) Նման տեղիքները, կ'եզրակացնէ. «Ինչպէս կը տեսնուի՝ բառացի նոյնութիւն չկայ. սակայն ձեւի եւ գաղափարի նմանութիւնը ակներեւ է, ինչ որ միեւնոյն հեղինակը կը մատնանշէ . . . : Այս փաստն ինքնին բաւարար կը համարինք երկու ճառերն ալ միեւնոյն հեղինակին վերագրելու, ու այդ անձը, ձեռագիրներու վկայութեամբ, կոչել Դաւիթ Անյաղթ վարդապետ» (Բազմավէպ, 1956, էջ 65). «Ոճի եւ լեզուի նմանութիւններ ալ կը նշմարուին երկու ճառերու գոնէ ներբողական մասերուն մէջ, թէպէտ Խաչի ճառը շատ աւելի աշխատուած եւ արուեստակեալ ոճ մը ունի, մանաւանդ վարդապետական մասին մէջ. մինչ Եկեղեցւոյ ճառը աւելի պարզ եւ հարթ ընթացք կը յայտնէ»:

Արդարեւ երկու գրութիւններուս մէջ «ձեւի եւ գաղափարի նմանութիւնը ակներեւ է». բայց այս՝ երկու հեղինակներու նոյնութիւնը չի մատնանշեր, այլ կը հաստատէ թէ երկրորդը ձգտած է առաջնոյն նմանողութեան: Ոճի եւ լեզուի նմանութիւններ կը նշմարուին միայն այն տեղերը, ուր երկրորդն առաջնոյն հետքերու վրայ է. ինքնակաց է այն, ծիրէն դուրս. եւ ինքնութիւնը ցոյց կու տայ իր նորակազմ եւ անհեթեթ բարդութիւններու մէջ, որոնցմով իր մտքի եւ արուեստի տկարութիւնը քողարկել կը նկրտի: Առաջինը ճարտասան է, իմաստասէր եւ աստուածաբան, հանճարեղ եւ հայկաբան ըստ դարուն ճաշակին: Անոր Ներբողեանը կար–

*դացուած է եւ մտքերն եւ բառերը խըրացուած են յաջորդ սերունդներէն ։*

*Հ․ Անանեան նկատի առնելով տեղիքս․ «իսկ աւտարացեալ Մանիքէցիք նմանաւրէն սէր կոչէին զաղրութիւն գործոց՝ միմեանց չնորհուկս առնելով․ եւ յայն դաւանեալ հաւատան» (տ․ 57—58), կը համարի թէ այս կարող է կռուան ծառայել ճառիս ժամանակը որոշելու ։ Առ այս նպատաւոր կը գտնէ Դաւթի Ներբողեանի Նախադրութեան այն տեղիքը, ուր կ՚ըսուի, թէ Գիւտ կաթողիկոսի կամ Յովհաննէս Մանդակունւոյ օրով Անտիոքէն երեք աարիներ եկան, որոնք չէին ընդունէր Ս․ Խաչը եւ Ս․ Կուսին «աստուածածին» յորջորջանքը ։ Այդ «աղանդաւորներէն» մին էր Կոստանդին, յանուանէ յիշուած ։ Անոնք ըլլալու են Մանիքեցիներ ։ Եւ որովհետեւ Պետրոս Հեգումենոս (կամ անոր աղբիւրը) կը վկայէ թէ Կոստանդին անուն Մանիքեցի մը Հայաստան ուղարկուած է, ան կը նոյնացնէ համանուն անտիոքացի ասորւոյն հետ․ եւ կը հետեւցնէ թէ «դժուար է Խաչի ճառի գրութիւնը 554 թուականէն առաջ դնել» (էջ 67—69) ։*

*Վերագոյն ցոյց տուի, թէ այդ երեք ասորի ճգնաւորները Սեւերեաններ (Յակոբիկներ) էին, որոնք թէ Ս․ Խաչի երկրպագուներ էին եւ թէ Ս․ Կոյսը «աստուածածին» խոստովանողներ ։ Զանոնք աղանդաւոր ենթադրողներն էին Դաւթի Ներբողին մեկնաբանները ։*

Ճառիս հեղինակը ուսումնասէր մ'եղած է. ան կարդացած է Աղաթանգեղոսը[13], Գրիգոր Աստուածաբանի[14], Գրիգոր Նիւսացւոյ[15], Յովհաննէս Ոսկեբերանի[16] գրուածքները, նաեւ Ներսէս Շնորհալւոյ Մեկնութիւնն տասն խորանացն[17]: Այս աղբիւրներէն ոչ միայն վկայութիւններ յառաջ կը բերէ, այլ եւ ասութիւններ եւ բառեր փոխ կ'առնէ:

Հեղինակիս ժամանակը 1170էն ետքը եւ 1331էն յառաջ պէտք է փնտռել, այս շրջանին կը յիշուի Դաւիթ վարդապետ (Քոբայրեցի), որ ի մէջ այլոց գրած է ի խնդրոյ Գրիգորի Տուտէորդւոյ «Յաղագս հակառակորդաց ի պատճառս զատկին» (Ակինեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Նիկոսիայի, թ. 20, թղ. 139բ), եւ 1300ին Ներսէս Մշեցւոյ աշակերտը Դաւիթ վարդապետ:

---

13 էջ 94, տ. 94—110:

14 էջ 93, տ. 41, 59. եւ «Զնոյն եւ Աստուածաբանն ի Յարութեան ճառին. եւ էջ 92, տ. 8 «ընդ ծովու եզերս ալիքն դաշնաւորին = Աստուածաբան, Նոր Կիր. ընդ ծովեզերս ալիքն դաշնաւորին»:

15 «Ընդ ասպարէս եւ ձեռնընդել ոչխարս հաւտին», տ. 113 = Գր. Նիւսացի Մեկն. Երգոց երգոյն. «ասպարէս եւ ձեռնընդել ոչխարացն». ՆՀԲ. ը. բ. Ասպարէս:

16 էջ 93, տ. 40:

17 «Ուրախ լեր խորան լուսոյ. յորժամ ամենայն եկեղեցիք յարափոխեալ միանան... զիմ փանաքիմաց... որ մեծ օրն է տեառն, տ. 111—113 = Ներսէս Շնորհալի, Մեկն. Մատթ. (Կ. Պոլիս 1825, էջ 11). «Եկեղեցիք ամենայն յարափոխեալ միանան... Նախ քան զատեանն մեծի աւուրն... փանաքիմաց խօսից...»:

16. Ճառ ի Ծնունդն Քրիստոսի: — *Կի- րակոս Գանձակեցի Թուելով Դաւիթ Ան- յաղթի գրութիւնները կը յիշէ նաեւ «գներ- բողեանս ի Ծնունդն Տեառն»* (էջ 17). *ասկէ առեալ կը կրկնեն Ղազար Ջահկեցի, Դրախտ ցանկալի*, 624 *եւ Հ. Մ. Չամչեան, Պատ- մութիւն Հայոց*, Ա. 539. *Զարպհանալեան, էջ ԻԵ:*

*Դաւիթ* ի Ծնունդն *ճառին ոչ թէ հեղի- նակն է, այլ թարգմանիչը, ինչպէս պիտի տեսնենք վարը:*

17. Դաւիթ անյաղթ փիլիսոփայի յա- ղագս էակաց: — *Հարցումն. ի քանի՞ս բա- ժանի էակն կամ յո՛րս: Պատասխանի. Եր- կակի. ի գոյութիւն եւ ի պատահումն...:* կջ. *Հց. Նախկին գոյացութիւն չարաբանո՞յ բոլոր գոյացութիւն, եթէ չչարաբանի ի բո- լոր գոյացութեանցն: Պխ. ի բաց բարձեալ ի բոլոր գոյացութեանցն չարաբանոյ ընդ ինքեան եւ զնախկին գոյացութիւն:*

Ձեռագիրք. *Էջմիածին Թ.* 1555, 284*ա*— 289 (1397): 1689, 233*բ* (*ԺԷ*): 1714, 188*ա* (*ԺԷ*): 1715, 297*ա* (*ԺԵ*): 1744, 383*ա*: 1751, 313*բ* (*ԺԴ*): 1763, 208*ա*: 1809, 133*ա* (1613): 1775, 118*բ* (*ԺԷ*): *Երեւան, Պետ. Թանգ.* 832, 320*ա*: 866, 151*բ*: 941 (*ԺԸ*): *Լազարեան ճեմ.* 125, 375*բ*: 169, 141*բ*: *Զմմառ*, 218, 211*բ*: *Տիւբինգէն*, 56, 126*ա* (*ԺԸ*): *Երուսաղէմ*, 401, 1288 (1273): 1231 (1307): 1372: 1376: 1709 (1298): *Պարիս*,

302, 332բ (1282)։ *Վիեննա*, 384, 121բ—127ա (*ԺԲ. Ցուց*. 836)։ *Եւ այլն*։

Հրտ. *Գիրք ժողովածոյ ընդդէմ Երկաբնակաց*, *Նոր-Ջուղայ*, 1688, *էջ* 91—201։ *Սիմէոն Ջուղայեցի*, *Տրամաբանութիւն*, *Կ. Պոլիս* 1794, *էջ* 206—212. *«Դաւթի անյաղթ փիլիսոփայի Ներգինացւոյ Գիրք էակաց»*։

*Դոյզն ծաւալով հարցարան մըն է Արիստոտէլի* 10 *ստորոգութեանց մասին. Պարիսի Թ*. 302, *յամէ* 1282, *վերնագիր կը կրէ. «Նորին յէակն». որ ապա անուանեցաւ «Գիրք էակաց». յօրինուած է տարրական դպրոցներու համար։ Ան ունեցած է հաւանօրէն եւ այլ նոյնանման հարցումներու շարք մը, իմաստասիրական եւ վարդապետական գիտելեաց շուրջը. որոնք օգտագործուեցան կազմելու համար «Հակաճառութիւնքն Մովսէսի եւ Դաւթի ընդդէմ Երկաբնակաց», տեղի ունեցած Կ. Պոլիս*, 453*ին. ուր Հարցատուններն են Յորնադ, Մամբրէ եւ Մելիտոս եպիսկոպոսներն եւ Պատասխանողները Մովսէս եւ Դաւիթ։ Կան ձեռագիրներ, որոնք խորագիր կը կրեն. «Հարցմունք Յորնադի եւ պատասխանիք Դաւթի փիլիսոփայի* (*Սեբաստիա*, *Թ*. 142), *«Հարցմունք Յորնադի եւ պատասխանիք Մովսէսի Հայոց քերդողի եւ Դաւթի փիլիսոփայի»* (*Վիեննա*, 167. *Զմմառ*, *Անտոնեանց*, 82. *Լվով*, 17. *Թաւրիզ*, 49)։ *«Հարցմունք Մամբրէի . . . եւ պա–*

տասխանիք Դաւթի եռամեծի․ Զի՞նչ են սահմանք մարդագոյին։ Պխ․ Սկիզբն յերակաց» (էջմ․ 1555)։ Այս Հակաճառութիւնը կ'ակնարկեն Ղազար Ջահկեցի, Դրախտ ցանկալի, էջ 624․ «Նաեւ գյաղթողական պատասխանի (Դաւթի) ընդդէմ Հարցմանց փիլիսոփայից Յունաց առաջի Մարկիանոսի»․ եւ Վարդան Բաղիշեցի․ «Դաւթի Հարքացւոյ անյաղթ փիլիսոփայի հարցումն Քաղքեդո(նակա)նաց եւ պատասխանիք ուղափառաց» (Արարատ, 1903, էջ 188)։

Բանասէրներու մէջ վէճ եղած է, թէ վերնագիրս «Գիրք Էակաց» ա՞յս Հարցմանց եւ Պատասխանեաց յատկացուած էր, թէ իմաստասիրական գրուածքի մը, որ կը ճառէր Էակի մասին։ Կարեւոր էր լուսաբանել խնդիրս, որովհետեւ գրուածքս ունէր յիշատակարան մը, որ Էակաց գրոց Թարգմանութիւնը 576 Թուականին կատարուած կը հաւաստէր։ Մ. Խոստիկեան, David ..., էջ 17—18, կը համարէր, թէ «Էակաց գիրքը» նախնաբար յատկացուած էր Սահմանաց գրքին։ Յ. Մանանդեան, Յունաբան Դպրոցը, էջ 136—142, կը պնդէ, թէ այն առաւելապէս Արիստոտելի Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց կը պատշաճի։ Բայց այս գրութիւնք ունին իրենց յատուկ վերնագիրներն եւ կարօտ չէին նոր յորջորջումի։ Անոնցմէ եւ ոչ մէկը հին եւ նոր ձեռագիրներու մէջ «Գիրք Էակաց» վերնագիրը կրած է․ մինչ Հարցմունք եւ Պատասխանիք

*Դաւթայ եւ Մովսէսի ա՛յս վերնագրի տակ հասած են մեզի։ Այս գրքին առաջին մասն է Պատճառք կամ Նախադրութիւն. Բ. մասը՝ Հարցմունք եւ պատասխանիք (եւ Ներբողեանն ի Ս. Խաչ)։ Հարցմունք կը սկսին. «Ի քանիս բաժանի էակն եւ յո՞րս»։ Անկէ ալ կոչուած է «Գիրք էակաց»։ Այսպէս կ՚անուանէ զայն, ԺԲ. դարու սկիզբը Պօղոս Տարօնեցի. «որպէս եւ ցուցանէ ի յէակաց գիրսն, զբաղում հարցում եւ զպատասխանիս պայքարմանն նոցա» (Ղազարեան ճեմարանի Թ. 44, Թղ. 93բ—94ա)։ Գրոցս մասին առիթ ունեցանք խօսելու վերագոյն, էջ 33—45։ Զգիտեմ ինչ աղբիւրէ կը գրէ Գ. Տէր-Մկրտչեան, թէ Դաւթի էակաց գիրքը թարգմանած է Մամբրէ (Դ. Հարքացի, էջ 26, ծան. ԼԸ)։*

18. Սահմանք իմաստութեան Դաւթի իբր հարցմամբ։ — *Զի՞նչ է Աստուած։ (Պխ.) Աստուած վսեմական եւ ինքնաբուն գոյութիւն. Աստուած ծայրագոյն եւ երանեալ բարի...։* Վջ. *Քաղաքականութիւն է մակացութիւն քաղաքի օգտի։ Քաջ է որ ի բացարձակ ի հոգեղէն մարմնոյ ըստ ինքեան գոլով բարի։ Օդ է տարրոյ ըստ տեղւոյ շարժումն բնութեան։*

*Ձեռագիրք շատ. կը յիշեմ Էջմիածին Թ.* 1681, 233*բ* (*ԺԴ*)։ *Վենետիկ, Թ.* 268, 181*ա* (*ԺԴ. անանուն. Ցուց.* 878)։ *Վիեննա, Թ.* 263, 340*ա* (1707. *Ցուց.* 676)։ 956, 267*ա* (1608)։ 969, 324*ա* (1695)։ *Էջմ.* 267,

153*ա* (1613)։ 1101, 123*ա* (1688)։ *Պարիս*, 260, 198*ա*։ *Զմմառ*, *Անտոնեանց*, 74, 4*ա* (1639)։ *Երուսաղէմ*, 833։ 1320։

*«Բառագիրք մըն է ամէն կարգի բառերով եւ անոնց սահմանով»․ Տաշեան, Ցուցակ, էջ* 616)։ *Հ․ Բ․ Սարգիսեան, Ցուցակ, Բ․*, 878, *դնելով անանուն, կը միտի ընծայել Վահրամ Րաբունւոյ։ Թէեւ մեծաթիւ են ծանօթ ձեռագիրները, բայց անոնց մէջ հնագոյնք են ԺԴ․ դարէն։ Այսպիսի այբուբենական շարքով իմաստասիրական հարցմունք եւ պատասխանիք երեւան ելան Բիւզանդիոն ԺԲ․ դարուն։ Հաւանաբար անոնց նմանողութեամբ է եւ այս։*

19․ Դաւթի փիլիսոփայի յաղագս արուեստաւոր իմաստասիրացն։ — *Յառաջնում մերձաւորութեանն․․․։*

*Վենետիկ*, *Թ*․ 875 (1671), *էջ* 409 (*Աղոնց*, *Քերակ․ ԺԷ*)։

*Հակիրճ բանք իմաստասիրաց։*

*Կը յիշէ Հ․ Գ․ Զարպհանելեան, էջ ԻԶ։*

20․ «Աղաւթագիրք․ այս է գիր իմաստութեան, որ հաւաքեալ է մեծ Դաւիթ անյաղթ փիլիսոփայն՝ գիտողաց»։

*Կը յիշէ Հ․ Գ․ Զարպհանելեան, էջ ԻԶ։*

# ՄԱՍՆ Դ.

# ԴԱՒԻԹ ՀԱՐՔԱՑՒՈՅ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Ուսումնասիրութեանս առաջին մասին մէջ* (§ 4) *խօսեցայ Համառօտի Յունաբան Դպրոցի թարգմանութիւններու վրայ. եւ ընդգծեցի այն երեք խումբերը, զոր կը դանագանէր Յ. Մանանդեան, ըստ լեզուական առանձնայատկութիւններու:*

*Այս Ա. եւ Բ. խումբերու թարգմանիչներու անունները չեն աւանդուած մեզի: Անոնց թարգմանութիւններու ժամանակի վերջին եզրն է* 606, *վասն զի Բ. խումբի պատկանած Տիմոթէոս Աղեքսանդրացւոյ Հակաճառութիւնը ի Դուին հրապարակի վրայ էր* 606/607 *տարիներուն: Թարգմանութեանցս սկզբնաւորութիւնը ենթադրաբար նշանակած էի* 590, *որովհետեւ մինչեւ Զ. դարու վերջը որ եւ է հետք չեմ գտներ այդ թարգմանութեանց լեզուական առանձնայատկութեանց: Նկատի առնելով, որ Բ. խումբը տուած է Հակաճառութեանց թարգմանութիւնը, կ'եզրակացնեմ, թէ թարգմանիչը միաբնեայ եղած է:*

*Գ. խումբի «թարգմանիչները, ինչպէս կը գրէ Մանանդեան, մեծ չափով օգտուել են յունաբան նախկին երկու խմբի թարգ-*

մանութիւններից, ուստի եւ նրանց մէջ յունարան լեզուն աւելի մշակուած է ու կաղապարուած եւ թէ յունարան բառապաշարը չատ աւելի հարուստ է ու ճոխ, քան նախորդ թարգմանութիւններում» (էջ 144)։ Անոնք «չարունակել են մշակել ու հարստացնել յունարան առանձնայատուկ լեզուն ու բառամթերքը։ Այս թարգմանութիւններում կան մի խումբ յունարան բառեր, որ չեն հանդիպում նախկին թարգմանութիւններում եւ թւում են կազմուած յունարան լեզուի զարգացման այս շրջանում» (էջ 158)․ այս ինքն «Զ․ դարի վերջերից․․․ մինչեւ Է․ դարի վերջերը» (էջ 208)։ «Դաւիթ–Ոլիմպիոդորոսի (այս ինքն Գ․) խմբի մեկնութիւնները թարգմանուած են, ըստ երեւոյթին, երկարնակ Հայերի միջավայրում եւ ամենայն հաւանականութեամբ, ութերորդ դարից առաջ» (էջ 202—209)։

Լ․ Խաչիկեան, աչքի առաջ ունենալով Զենոնի Յաղագս բնութեան գրուածքը, որ Գ․ խումբի կը պատկանի, կը գրէ, թէ ան «թարգմանված պէտք է լինի թարգմանչական դպրոցի երկրորդ շրջանում կատարուած թարգմանութիւններից առ նվազն մի քանի տասնամեակ յետոյ[1]»։

Գ․ խմբի թարգմանութիւններու ժամանակի մասին այս ենթադրական եզրներու երակէտը եթէ 610 առնենք, Լ․ Խաչիկեանի

---

[1] Գիտական նիւթերի ժողովածու, 2 (Երեւան, 1950), էջ 75։

«առնուազն մի քանի տասնամեակ» տարիները կը հասցնեն զմեզ Է. դարու առաջին կէսը, իսկ Մանանդեանի «Զ. դարու վերջէն մինչեւ Է. դարու վերջը» ուստի 100 տարուան շրջանը՝ 710: Այն պարագան, որ Անանիա Շիրակացի չի ճանչնար Գ. խումբի Թարգմանութիւնները՝ 610—670 տարիներուն, կրնանք անվարան հետեւցնել, թէ այդ խումբի գործունէութիւնը սկսած է 650էն ետքը եւ 720էն յառաջ:

Յեցած այս եզրակացութեան վրայ՝ 610—650/660, իրր կիսադարեան միջոցը պէտք է նկատել անցման շրջան, երբ Ա. եւ Բ. խումբերու Թարգմանութիւնները ընթերցանութեան, ուսումնասիրութեան եւ դասախօսութեան առարկայ կ՚ըլլան քերդողներու եւ ապա իբրեւ դասագիրք անոնց աշակերտաց: Այս պայմաններու տակ բնականաբար երկու խումբերու լեզուական առանձնայատկութիւնները պիտի ձուլուէին, թէ քերդողներու եւ թէ աշակերտներու բառամթերքին մէջ:

Այս շրջանի երէց աշակերտութիւնը, որ ուսած էր հայ լեզուն վանական դպրոցներու մէջ, գլխաւորաբար դասական, գրաբար, մատեաններու վրայ, թէպէտ կարդացին Փիլոնի եւ Իրենէոսի գրուածքներու Թարգմանութիւնները, բայց հեռու մնացին անոնց նորակերտ բառամթերքէն, այսպէս Եղիշէ. ընդ հակառակը կրտսեր աշակերտութիւնը, որ իր ուսումը առաւ Թէոնի, Ափթոնիոսի

ճարտարախօսական եւ Դիոնէսիոսի Քերականութեան դասագիրքերու վրայ, տարուեյան անոնց հոամնքէն :

Կրտսեր աշակերտներէն մէկն է Դաւիթ Հարքացի, աշակերտն Մովսէս Քերթողի, որ առաքուեցաւ Կ. Պոլիս աշակերտելու հելլենական դպրութեան (650°) : Դաւիթ իբրեւ թարգմանիչ առաջին անգամ հրապարակ ելաւ Դամասկոս, 660/661ին, ուր Համազասպ Կիւրապաղատի հրամանով թարգմանեց Ս. Բարսղի ի Ծնունդն Տեառն ճառը յունարէնէն :

Այս թարգմանութիւնը անդրանիկն է Գ. խումբին. եւ ինձ կը թուի, թէ ինքը եղած է նաեւ այս խումբի միակ թարգմանիչը, թէ՛ փիլիսոփայական եւ թէ՛ հայրագիտական գրուածքներու. ուստի արժանահաւատ կրնանք համարիլ աւանդութեան այն հաւաստումները, թէ Դաւիթ «Ներքինեցին» է թարգմանիչն (բայց ոչ հեղինակն կամ մեկնիչն) այն փիլիսոփայական Մեկնութիւններու, որոնք Գ. խումբին կը պատկանին: Այս խումբի առանձնայատուկ բառերը հաւասարապէս կը գտնենք թէ փիլիսոփայական Մեկնութեանց եւ թէ հայրագիտական գրութեանց (Կիւրեղ Աղեքսանդրացի, Դոնիսիոս Արիսպագացի, Նեմեսիոս եւ այլն), որոնց թարգմանութեանց տարիները ծանօթ են մեզի : Յ. Մանանդեան, որ անդրադարձած էր այս կէտին, դժբախտաբար ուշադիր չէր եղած անոնց թարգմանութեանց քիշատա-

վարաններու, եւ համարած էր թէ անոնք «հաւանաբար թարգմանուած պիտի լինին Զ. դարի առաջին կիսից յետոյ» (էջ 114, ծան.):

Ես յառաջ պիտի բերեմ այս տեղ այն թարգմանութիւնները, որոնց թարգմանիչ Դաւիթ Հարքացին («Հռոմայեցի», «Ներքինացի») կը համարիմ: Անշուշտ կատարեալ չէ ցանկս, որովհետեւ կան բազմաթիւ ճառեր, հայրագիտական գրուածքներ, որոնք տակաւին ձեռագիր կը գտնուին, ոչ դիւրամատչելի, ուստի դեռ չուսումնասիրուած:

1. Դաւթի (Նոր–պղատոնական) փիլիսոփայի Յառաջաբանութիւնք իմաստասիրութեան (Գիրք Սահմանաց):

Որք միանգամ իմաստասիրութեան տենչան բանից . . . : Վջ. եւ մի չար ինչ գործեսցուք: — Դաւթի եռամեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ չորից առարկութեանցն Պիհռոնի իմաստակի. եւ սահմանք եւ տրամատութիւնք մինչեւ ցայս վայր:

Հրտ. Դաւիթ, 1833, էջ 120—214: Տես վերը էջ 10:

1ա. Ընդ այսոսիկ եւ առաջիկայ բան իմաստնոց: — Ամենայն չար տանջելի, ոչ ոք տանջեալ՝ անապական . . . : Վջ. ապա ուրեմն ոչ է անեղ:

Այս Բան իմաստնոց կցուած է նախորդին (էջ 215—216), որուն կայ նաեւ յունարէն բնագիրը, ընծայուած Գրիգոր Նիւսացւոյ, առնուած Դիդիմոս Կոյրի Ընդդէմ Մա–

*նիքեցւոց գրութեանէն*. Migne, Patrologia gr. *հատոր ԼԹ*, *էջ* 1085—1110․ *հմմտ*․ O․ Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, *հատոր* 3 (Freiburg1912), *էջ* 112, 202: *Զարպհանալեան*, *Մատենադարան*, *էջ* 373—374:

1բ․ Դաւթի փիլիսոփայի Առածք հինգ․ *թէ զինչ արդեօք իցէ սահման կամ զինչ բնաւորական սահման․․․: — Արդ սահման է բան համառօտ յայտնիչ գոյացութեան․․․:* Վ.ջ․ *ոչ նոյնք ասին դոլ երբեք ուրեք*:

*Դաւիթ*, *էջ* 217—222:

1գ․ *Նորին վասն Բաժանման: — Ամենայն որ մխանդամ բաժանել գոյ յայլոց գոյից․․․:* Վ.ջ․ *որպէս բոլոր բնաւորեցաւ պահել*:

*Դաւիթ*, *էջ* 223—224:

2․ Դաւթի փիլիսոփայի Վերլուծութիւն Ներածութեանն Պորփիւրի: — *Հանդերձեալք հանդերձ Աստուծով սկիզբն առնել առաջիկայ շարագրութեանս․․․:* Վ.ջ․ *Իսկ պատահումն ոչ երբեք*:

*Դաւիթ*, *էջ* 251—356: *Տես վերը՝ Ա*․ 1²:

3․ Դաւթի փիլիսոփայի Մեկնութիւն տասն Ստորոգութեանցն Արիստոտէլի:

*Սկիզբը պակաս*: *Տես վերը Ա*․ 1³:

*Հրտ*․ *Յ*․ *Մանանդեան*, *Մեկնութիւն ստորոգութեանցն Արիստոտելի ընծայեալ Էլիասի Իմաստասիրի*, *Պետերբուրգ* 1911, *էջ* 1—140: *Հմմտ*․ *Մանանդեան*, 25/58:

4․ Հատուած ինչ Մեկնութեան Ստորո–

գուրթեանցն: *Հրտ. Մանանդեան, անդ, էջ 141—149: Հմմտ. Մանանդեան, էջ 52—59:*

5. Դաւթի փիլիսոփայի Մեկնութիւն ԺԳ գլխոց Արիստոտելի ի վերլուծականն: — *Դիտաւորութիւն Արիստոտէլի ի Վերլուծականն՝ է բուռն հարկանել զպարզ հաւաքմանէ...: Վջ. բայց միայն զկարգ սահմանացն փոխէ:*

*Խորագիրը՝ «Սկիզբն եւ նախադրութիւն գրոց որ ասի ըստ Յունաց Անալոտիկէ* (ἀναλυτικά) *եւ հայերէն Յաղագս Վերլուծութեան. արտադրեալ ի մեծ իմաստասիրէ Հելլենացւոց՝ յԱրիստոտէլէ. եւ թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ փիլիսոփայէ»:*

*Հրտ. Դաւիթ,* էջ 557—598: *Տես վերը՝* 2[3]: *Հմմտ. Մանանդեան,* էջ 59—68:

6. Զենոնի իմաստասիրի Յաղագս Բնութեան: — *Յաղագս պիտանացու տեղից: Արդ են սեռք պիտանացուք վեց. Դիրք, կարգք...: Վջ. որ ըստ աշխարհին են տուիչք արհեստ անյաղթ փիլիսոփայից:*

*Հրտ. Լ. Խաչիկեան, Զենոնի Յաղագս Բնութեան երկի հայկական թարգմանութիւնը. Գիտական Նիւթերի Ժողովածու. հատոր* 2 (*Երեւան,* 1949), *էջ* 65—98: *Ռուս թարգմ.* С. Аревшатян, Трактат философа Зенона „О природап“. *Բանբեր Մատենադարանի, Թ.* 3 (*Երեւան* 1956), 315—342:

7. Մեկնութիւն Քերականութեան Դիոնեսիոսի Թրակացւոյ: — *Յերկուց իմն պատ-*

*ճառայ մարդոյս գոյացեալ հաստատեցաւ բնութիւն...: Վջ. զի աճմամբ լինին չարադրեալք:*

*Հրտ. Գ. Ջահուկեան, Դաւթի քերականական աշխատութեան նորայայտ ամբողջական ձեռագիր տեքստը. Բանբեր Մատենադարանի*, 3 (*Երեւան* 1956), 241—264:

*Մեկնութեանս երեք ձեռագիրք անանուն են, խորագիր կը կրեն «Մեկնութիւն քերականին»: Հայ քերականները կը վերագրեն եռամեծ Դաւիթ փիլիսոփայի. հմմտ. Ադոնց, Քերակ.*, *էջ* 79, 83 (*տարուածք*). *եւ Մանանդեան*, *էջ* 210—222:

8. Նոննոսի «Ժողովարանք մեկնութեանն պատմութեանցն այնոցիկ, զորս յիշատակեաց Գրիգոր Աստուածաբանն: — *Ա. Ի ճառին Մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Ոչ Արամազդայ պսոքիկ ծնունդք...: Վջ. որ քան զամենայն ընտանեգոյն է բանին պաշտաւորաց:*

*Հրտ. Յ. Մանանդեան, Մարբուրգ* 1903:

*Հմմտ. Յ. Մանանդեան*, 236—246: *Էջմիածնի Թ.* 1765 *խորագրած է. «Պատմութիւն Լակոնացւոց արարեալ ի Դաւթէ փիլիսոփայէ»:*

9. Արիստոտէլի իմաստասիրի Թուղթ առ Աղեքսանդրոս թագաւոր. Պատմութիւն յաղագս աշխարհի: — *Իսկ բազում անգամ ինձ աստուածային ինչ եւ բարեբախտեալ ճշմարտապէս իր...: Վջ. բարեբաստիկ լինել եւ երանելի՝ ի նմանէ ընդունի պշնորհս:*

Հրտ. Դաւիթ, էջ 603—628:

Կիպրոսի Թ. 24, Թղ. 130բ—146 ունի «Լուծմունք Աշխարհաց գրոցն Արիստոտելի (ի լուսանցս՝ «Դաւթի է»). Իմաստուն ստորոգիչն զաշխարհէ բնախաւսելով սկիզբն ի ճշմարտութենէ առնէ»:

10. Արիստոտէլի Յաղագս առաքինութեանց առ Աղեքսանդրոս Թագաւոր: — Գովելի են գեղեցիկքն եւ պարսաւելի գարշելիքն…: Վջ. որք են ի պարսաւելեացն:

Հրտ. Դաւիթ, 627—635:

11. Եւտիքի եպիսկոպոսի Կոստանդնուպոլսեցւոյ Յաղագս զանազանութեան բնութեան եւ անձնաւորութեան: — Որք զարտաքին իմաստութեանցն վարժեցան, մեծամտեալ նոյա յաղագս բնութեան եւ անձնաւորութեան…: Վջ. նզովէ սուրբ եւ առաքելական եկեղեցիս:

Ձեռագիրք՝ Էջմ. 500, 323ա (1305): Վիեննա, 623, 268բ (1732): Վենետիկ, 295, 25ա (1824. Ցուց. 1070—1074: Փարիզ, 130, էջ 479:

Այս 1—11 գրուածքներու թարգմանութիւնը պէտք է դնել 670, յատկապէս 690—710 տարիներու մէջ, երբ Դաւիթ վերադարձած էր Կ. Պոլիս:

Աւանդութիւնը Յառաջաբանութիւնքն (Սահմանքն) գրուած է կ'ըսէ Հայաստան, ուստի Դարինքի մէջ: Մեզի թուականով ծանօթ են 12—17 գրուածքներու թարգմանութիւնք: Թ. 12 թարգմանուած է 660/1ին

*Դաւիթ «Տարօնեցիէն» Դամասկոս, Համազասպայ Կուրապաղատի հրամանաւ:* *Թ.* 13—17 *ունին Թարգմանիչէն յիշատակարաններ. որոնց համաձայն Դաւիթ թարգմանած է եւ Ստեփանոս Սիւնեցի քահանան օրինակած, «գրեալ» է գեղագիր եւ տարած է Հայաստան: Այս յիշատակարանները գրեթէ միապաղաղ յօրինուած են. յետագային կրած են անոնք մանր փոփոխութիւններ: Նախնականին օրինակը պահպանած է Թ.* 15, *որուն ուշադիր ըլլալ յանձնարարելի է:*

12. Բարսղի Կեսարացւոյ ի Ծնունդն Փրկչին: — *Քրիստոսի ծնունդն իւրականն եւ առաջինն. եւ յատուկ իւրոյ աստուածութեան, լռութեամբք պատուեսցի . . . : Վջ. որք զաչս մտացն ունէին մաքրեալք: Ընդ որս եւ մեք գոցուք բաց երեսաւք զփառսն որպէս ընդ հայելի ինչ տեսանելով եւ փոխարկելով փառաց ի փառս. զի նմա փառք յաւիտեանս:*

Յիշատակարան. *Դաւիթ թարգման Տարօնացի զճառս զայս յետոյ* (660°) *դարձոյց ի յունէն ի հայ բարբառ ի Դամասկացւոց քաղաքին հրամանաւ Համազասպայ Կուրապաղատի, Սամիկոնէից տեառն: Եւ եղիցի աւրհնութիւն Տեառն ի վերայ նորա:*

Ձեռագիրք. *Էջմիածին, Թ.* 500. *տակէ Վիեննայի Թ.* 217, *Թգ.* 57*բ*—60*բ*:

13. Դիոնեսիոսի Արիոպագացւոյ, եպիսկոպոսի Աթենացւոց գրութիւնք:

Յիշատակարան. *Ի ՅՄԻ ամի արարածոց աշխարհիս ըստ յունարէն թուոյ ի ԺԴի ըն—*

դիկտիոնին, յԲ. ամի թագաւորութեանն Փիլիպպ<իկ>ոսի թարգմանեցան գիրքս այս սրբոյն Դիոնեսիոսի Արիոպագացւոյ ի ստոյգ աւրինակաց ի Կոստանդինուպաւլսի, ի ձեռն Դաւթի հիւպատոսի եւ թագաւորական սեղանոյն Կինառի. եւ ի ձեռն Ստեփաննոսի քահանայի եւ քերդողի, աշակերտի Մովսիսի Սիւնեաց եպիսկոպոսի: Արդ մաղթեմ զքրիստոսասէր պաշտաւնեայդ սրբոյ սեղանոյ, որք առնոյք յաւրինակէս յայսմանէ, գրեսջիք եւ զբանս զայս առ ի յիշատակ բարեխաւսութեան առ Քրիստոս. զի գրեալ եղիջիք եւ դուք ի դպրութեանն կենաց:

Էջմ. 166, 323բ (ԺԳ):

Հմմտ. Ադոնց, էջ ՀԹ—ՁԱ:

Յիշատակարանիս ՅՄԻ (6220 = 712/3) տարւոյն ինդիկտիոնն է Ժ. ուստի պէտք է ուղղել «ի տասներորդի ինդիկտիոնի: Այսպէս կը պահանջէ նաեւ «Բ. ամն» Փիլիպպիկոս Վարդանի (711—713):

14. Կիւրղի Աղեքսանդրացւոյ Գիրք Պարապմանց եւ Գանձուց (714/715):

Յիշատակարան. Ի ՅՄԻԳ.ի ամի արարածոց աշխարհիս ըստ յունարէն թուոյ, ի ԺԳ.ի ինդիկտիոնի, յԲ. ամի թագաւորութեան Անաստասի, թարգմանեցան գիրքս Պարապմանց եւ Թղթոց սրբոյն Կիւրղի եպիսկոպոսին Աղեքսանդրի ի ստոյգ աւրինակաց, ի Կոստանդինուպաւլսի, ի ձեռն Դաւթի հիւպատոսի եւ թագաւորական սեղանոյ կենառի եւ ի ձեռն Ստեփաննոսի քեր–

Թողի, աշակերտի Մովսէսի Սիւնեաց եպիսկոպոսի: Արդ մաղթեմ դաստուածասէր պաշտաւնէից սրբոյ սեղանոյ, որք առնոյք ուրինակ յայնմանէ, գրեսջիք եւ զբանս զայսոսիկ առ ի յիշատակ բարեխաւսութեան առ Քրիստոս. զի գրեալ եղիջիք եւ դուք ի դպրութեան կենաց:

Երեւան, Մատենադարան, Թ. 476. 478. 1796: Բեռլին, Թ. 31:

Հրտ. Կ. Պոլիս, 1717: F. C. Conybeare, The armenian version of Revelation and Cyril of Alexandria's Scholia on the Incarnation..., London 1907, էջ 95—149:

Յիշատակարանիս ՅՄԻԴ եւ ինդիկտիոնի ԺԴ. պէտք է ուղղել ՅՄԻԴ եւ ինդ. ԺԳ. որոնք կը համապատասխանեն փրկչական 714 սեպտ.—715 օգոստ. 31ի: Անաստասի (713—715) Բ. տարին է 714—715:

15. Մեկնութիւն Ղեւտիկոնի (716/717):

Յիշատակարան. Յամի վեցհազարերորդի երկերիւրերորդի քաներորդի չորրորդի արարածոց աշխարհիս, ի չորեքտասան (ին)դիկտիոնիս <յԱ. ամի Թագաւորութեանն Լեւոնի> Թարգմանեցան գիրքս Ղեւտականի Թարգմանութեան յաստուածապահ եւ յամեներջանիկ քաղաքս Կոստանդինուպալիս շնորհիւ Աստուծոյ ի ձեռն Դաւթի հիպատոսի եւ կեսարի Թագաւորական սեղանոյ, որդւոյ Եղիայի քահանայի. գրեալ ձեռամբ Ստեփանոսի քահանայի եւ քերթողի ի

Սինեաց աշխարհէն, ի փառս եւ ի պատիւ անմահին Աստուծոյ. ամէն:

Վենետիկ, Թ. 873 (յամէ ՉԽԸ = 1299). Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 301: Երեւան, Մատենադարան, Թ. 2679 (981). վերջէն պակասաւոր:

Ինդ. ԺԴ. = Փրկչական 716 սեպտ.:

«Կեսար Թագաւորական սեղանոյ» Բիւզանդական արքունիքէ շնորհուած պատուանուններէն մէկն է. շնորհուած է նոյնը նաեւ Հայոց Թորոս իշխանին, ինչպէս կը կարդանք Խորով Գանձակեցւոյ վկայարանութեան († 1167, յունուար 10) մէջ. «կատարեցաւ... յիշխանութեանն Հայոց Թորոսի, որ էր պատուեալ կեսարոսական (Զ. կեսարոսական) պատուով ի Թագաւորէն Յունաց». Հայոց նոր վկաները. Վաղարշապատ 1903, էջ 31. հմմտ. Աճառեան, Արմատական Բառարան, Գ. 1148:

Այն ձեռքը, որ փոփոխութիւններ մուծած է Թ. 13, 14 եւ 16 Յիշատակարաններու մէջ, Կեսարը վրիպակաւ կարդացած է կեճառ. զոր Բրոսէ փորձած է ստուգաբանել լատիներէն cellarius, մառանապետ, եւ առաջարկած է կարդալ կելար. բայց այսպիսի պատուանուն չի յիշուիր. հմմտ. Տաշեան, Մատենագրական մանր ուսումնասիրութիւններ, Ա., էջ 8—9 = Հանդ. Ամս. 1892, էջ 67. եւ Աճառեան, Արմատ. Բառ. Գ., էջ 1140:

16. 1. Նեմեսիոսի յաղագս Բնութեան

Մարդոյ Ձեռագիրք ունին իբրեւ վերնագիր «Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ»․ Բայց Սիմէոն Պղնձահանեցի 1227ին կը ծանօթագրէր թէ «Նեմեսոյի եպիսկոպոսի Եմեսիոյ է գիրքս»․ այսինքն Նեմեսիոսի (Էջմ․ 1073, 200 ա)։ Հմմտ․ Հ․ Յ․ Տաշեան, ․․․ Ասոր կից ունին Ձեռագիրք։

16ր․ Գրիգորի եպիսկոպոսի, եղբօր Բարսեղի Տեսութիւնն ի մարդոյն կազմութիւն։ — Գլ․ Ա․ Ցորում է իմն մանաւորական յաղագս աշխարհիս բնախօսութիւն, եւ գեղեցիկ իմն եւ պայծառ պատմութիւն։

Յիշատակարան․ Ի ՅՄԻԵ․ ի ամի արարածոց աշխարհիս ըստ յունարէն թուոյ, ի ԺԴ․-ի ընաիկտիոնին, առաջին ամի թագաւորութեանն Լեւոնի թագաւորի, թարգմանեցան գիրքս որոյն Գրիգորի եպիսկոպոսի Նիւսեայ ի սորոյ ուրինակաց ի Կոստանդինուպոլիս ի ձեռն Դաւթի հիւպատոսի եւ թագաւորական սեղանոյն կինաոի եւ ի ձեռն Ստեփանոսի քահանայի, աշակերտի տեառն Մովսէսի Սիւնեաց եպիսկոպոսի։ Արդ աղաչեմ զքրիստոսասէր պաշտաւնեայս սորոյ եկեղեցւոյ յիշել զիս յաղօթս ձեր յանապազ։

Էջմ․ 1013, 241ր (1227)։ Առաջին մասը հրատարակուած Վենետիկ 1889)։

Ձեռագիրներն «ամն արարածոց աշխարհի» ունին ՅՄԻԷ․ ուղղեցի ՅՄԻԵ (717/718), որուն կը համապատասխանեն ճշգիւ ԺԴ․

*ինդիկտիոնն եւ Ա․ ամի Լեւոնի Գ․* (717 *մարտ* 25—741 *յունիս*18)։

17․ Պիսիդեայ իմաստասիրի վեցօրեայ։ — *Որպէս զի մեծ են գործք քո Տէր։ Եկի բերելով քեզ յանապատէ սրտի պտուղս մշակեալս ի քոյդ ցօղոյ* ․․։ Վջ․ *յորժամ ընդդէմ մեր զայրացի սուր նոցա։*

Ձեռագիրք․ *Զմմառ*, *Անտոնեանց*, *Թ*․ 9, *Թղ*․ 268*ա*—277*բ* (1695)։ *Կիպրոս*, *Նիկոսիա*, *Թ*․ 16, *Թղ*․ 113*ա*—123*բ* (1307)։ *Վենետիկ*, *Թ*․ 1104, *էջ* 101—105 (*Համառօտ․ Հմմտ․ Ադոնց*, *Քերակ*․ *ԺԷ*)։

*Հրտ*․ *Վենետիկ*, 1900։ *Հմմտ*․ *Հ*․ *Յ*․ *Տաշեան*, *Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք*, *Բ*․, *էջ* 321—384 = *Հանդ*․ *Թարգմանութիւնս չունի յիշատակարան*։ *Ամս*․ 1900, *էջ* 308 *եւ չար*․)։

*Որովհետեւ յայն բնագիրը* 41 *տող աւելի ունի*, *կարելի է կարծել թէ հայ թարգմանութեան վերջը ինկած ըլլայ*, *անոր հետ նաեւ յիշատակարանը*։

*Գ*․ *խումբիս կարելի է կցել եւ այլ ճառական գրուածքներ*, *որոնք այս շրջանիս մէջ թարգմանուած կ՚երեւան*, *կը յիշեմ այս տեղ՝*

18․ Յովհաննէս Ոսկեբերանի ընծայուած) ճառ յԱւետիս Աստուածածնին։ — *Պարծեալ խնդութեան աւետիք* ․․․։

*Հրտ*․ *Յովհ*․ *Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոյն Պաւղոսի*, *Բ*․ (*Վենետիկ* 1862), *էջ* 634—639։

## ԴԱՒԻԹ ՄԵԿՆԻՉ ՔԵՐԱԿԱՆԻՆ ԵՒ ՀԱԳՆԵՐԳՈՂ

*Յովհաննէս Երզնկացի իր Քերականի Մեկնութեան Նախաբանին մէջ կը պատմէ, թէ գացած է Երզնկա եւ գտած է հոն ժողովածոյք մը Քերականութեան մեկնութեանց, զոր գրել տուած է պարոն Յովհաննէս, Սարգիս եպիսկոպոսի ուսումնասէր որդին: Այդ ձեռագիրը կը պարունակէր իր ծոցը «Դաւիթ փիլիսոփային եւ Մովսէս քերթողին եւ այլ երեք մեկնիչս տառից անուան մեկնողին» (Ադոնց, Քերակ., էջ ՂԹ): Ապա խօսելով Գրիգոր Մագիստրոսի խմբագիր Մեկնութեան վրայ, կը հաւաստէ, թէ «հմուտն իմաստութեան Մագիստրոս իշխանն աշխատեալ ի սմա եւ երից մեկնչաց բանս առ միմեանս եդեալ՝ զԴաւթի փիլիսոփայի եւ զՄովսէսի քերդողի եւ զմիւս (անանուն) իմաստնոյ, որոյ ոչ էր գրեալ անունն՝ արարեալ եւ ինքն յաւելուած բանից յիւրենէ» (անդ, Ղէ—ՂԸ):*

*Դաւիթ փիլիսոփայի Մեկնութենէն հատուածներ առած է Երզնկացին իր խմբագիր Մեկնութեան մէջ, ուր առաջին տեղին գրուած է ընդարձակ հատուածս. «Եթէ է՞ր աղագաւ բազում փոյթ յանձին կալեալ եղեւ վասն Քերականութեանս՝ ուսանիմք ի բանից Նախերգանի եռամեծին Դաւթի փիլիսոփայի, որ ասէ. Յերկուց իմն պատճառէ մարդոյս գոյացեալ հաստատեցաւ բնութիւն...: Վչ. եւ այլ այսպիսիքն ոչ ուսեալք որպէս ի սմանէ հմտանալի լինին: Այսոքիկ*

*ըստ եռամեծին Դաւթի» (Ադոնց, անդ, էջ* 79—83)։

*Դաւիթ եռամեծ փիլիսոփայի այս Մեկնութիւնը պահուած է մեզի Երեւանի Մատենադարանի Թ.* 1115, 1746 *եւ* 5596 *ձեռագիրներու մէջ, անանուն, «Քերականի Մեկնութիւն» խորագրի տակ*[1]*. ուր Երզնկացւոյ յառաջբերութիւնը ամբողջութեամբ ունինք* (*էջ* 244—246)։

*Ն. Ադոնց, որ տակաւին ծանօթ չէր այս Քերականի Մեկնութեան եւ «Դաւթի» Մեկնութիւնը կազմած էր խմբագիր Մեկնութեանց մէջ ներս առնուած հատուածներէ, տրամադրուած էր ընդունելու, որ Մեկնութեանս հեղինակը հայ պէտք է ըլլայ, որ ունեցած է ձեռքի տակ Թրակացւոյ Քերականութեան յունական մեկնութիւններ (Ադոնց, անդ էջ ճՁԳ). նաեւ Յ. Մանանդեան, Յունաբան Դպրոց, էջ* 210, *կը միտէր այդ կարծիքի. «այդ ենթադրութիւնը թւում է ինձ հիմնաւոր»։*

*Քերականի Մեկնութիւնը թարգմանութիւն է. թարգմանուած թարգմանիչէ մը, որ նկատի առած է տեղ տեղ հայերէնի քերականութեան կազմութիւնը։ Եթէ հայ աւանդութիւնը այս թարգմանութիւնը «Դաւիթ եռամեծ փիլիսոփայի» ընծայած է, պէտք է ենթադրել, թէ անոր հեղինակը կամ* ἀπὸ φωνῆς Δαυίδ *է, ուստի Դաւիթ Նորպղատո—*

---

[1] *Հրտ. Գ. Ջահուկեան, Բանբեր Մատենադարանի,* 3 (*Երեւան* 1956), 244—264։

նական, թէեւ ծանօթ չէ իր անունով այս պիսի գրուածք[2], եւ կամ անոր թարգմանչին Դաւիթ Հարքացւոյ վերագրուած է:

*Այս Քերականի Մեկնութենէ դուրս կան քերականական հատակոտորներ, որոնք ձեռագիրներու մէջ Դաւիթ փիլիսոփայի եւ երբեմն Մովսէս Քերդողի անունը կը կրեն. կը յիշեմ.*

1· Յաղագս քերականին պատճառ· Դաւթի փիլիսոփայի ասացեալ: — Քերականութեան արուեստ յարտաքնոցն է...: Վ.ջ· գի եւ որք յիմաստասիրութեան են՝ առաւել ստ է օգուտ:

Հրտ. Դաւիթ, էջ 599—600:

2· Դաւթի փիլիսոփայի յաղագս հատարակաց շաղաչարաց: — Հատարակութիւնս այս բառ երկուց իմն ունի նշանակութիւն...:

Երեւան, Մատենադարան, Թ. 1809, թղ. 256ա—260բ: Դաղեան ձեռագիրք, Թ. 91, 296ա (Թօփչեան, Ցուցակ, էջ 106): Հատուածս Ադոնց զետեղած է Մովսէս քերդողի Մեկնութեանց շարքին մէջ, էջ 168:

3· Քերականութեան հին անանուն Մեկնիչը յառաջ կը բերէ տեղիքս (Ադոնց, 129)· «Իսկ քաջոլորակի տող առի Դաւթեան քերթութիւն (եւ) որ յաղագս Տիգրանայ, յոր-

---

[2] Դիոնեսիոս Թրակացւոյ Քերականութեան մեկնիչ ծանօթ է միայն Գէորգ Քոյերոբոսկոս, որուն Մեկնութենէն հատակոտորներ միայն մնացած են, հմտ. A. Hilgard, Grammatici Graeci IV, 2 (1894), էջ Հէ եւ շար.: Հմմտ. Krumbacher, Gesch. der byz. Literatur, էջ 583—584:

ժամ երկար բառիւք եւ ոլորակաւ ի սկսմանէ մինչեւ յաւարտումն զմիտս առեալ բերիցէ· որպէս յորժամ ասէ·

Եւ արդ ներգործող ի միտս երեւիւր
առ խորհուրդս փողարին
Մեծոգւոյ Տիգրանայ գեղանին
Տիգրանուհի իւր
Ներածեալ կողարար նաեւ
ողջամիտ աշխարածուհի:

Ուրիշ հին Քերականի Մեկնիչ մը կ՚անուանէ զայս «Ոտանաւորք Դաւթի ի վերայ Տիգրանայ»· եւ կը փորձէ մեկնել զայն· «Դաւիթ փիլիսոփայն տաղ եւ պատմութիւն է արարեալ ի վերայ Տիգրանայ Հայոց թագաւորին, որ կին Տիգրանայ մեռեալ էր, նմա ողբերգակ, այսինքն լալականն՝ թէ կին մարդ էր թէ (այր) մարդ, լայր եւ զայս ասէր· Եւ արդ ներգործող ի միտս երեւիւր· այս ինքն թէ այնպէս լաց ասէր փողարն, որ է լալականն՝ ողբերակն, ի վերայ Տիգրանայ կնոջն, որ զինչ ի Տիգրանայ միտքն ներածէր կիրք իմացուած, զայն յայտնէր խորհրդաւոր բանն՝ զնորա կիրքն, այս ինքն մեծահոգի, մեծահաւատ եւ բարի կին էր Տիգրանուհի· զայս ամենայն լալականն ասէր···: Զայս ողբերգակի բանս Դաւիթ փիլիսոփայն տաղ չինեաց· այնպէս որ ձայնաւոր եւ բազաձայն եւ կրկնակ գրեր եւ այլն ի ներքս ի վանդն զանուս· յորժամ զբոլորն առեն տրամախոհութիւն ի միտքս տաղին երեւէր»

(Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա., էջ 42. հմմտ. նաեւ նոյն հեղինակին Յուշիկք հայրենեաց, Բ., 115. Այրարատ, 557. Սիսական, 316):

Դաւթեան տաղս ուրիշ բան չէ բայց եթէ օրինակ մը մեկնելու համար քաջոլորակ տաղի չեչտն ու չափը: Նախնաբար անշուշտ հոմերեան կը կոչուէր այս տաղը. մեզի չէ աւանդուած թէ Դաւիթ ե՛րբ եւ ո՛ւր յօրինած է այս օրինակը: Զուր է ուստի երեւակայել, թէ Դաւթեան քերթուածի մը հատակոտորը ըլլայ այն:

Բայց «Դաւթեան քերթուածին» կարող էր անուանուած ըլլալ Հարքացւոյ ողբերգութիւնն ի մահն Աշոտ իշխանին 6—6 չափով.

Աստուածային բանին
    արուեստաւոր հոգի
Յօրինեա իմաստիւ
    ըղտխրական երգմունս
Զի սրդալի ձայնիւ
    անդադար ողբասցուք
ի վերայ դըժընդակ
    կորըստեանս մերոյ:

Այսպիսի պատրանքի մէջ էր Մովսէս Խորենացի, երբ կը գրէր թէ «բայց պարտ է մեզ զոմանց անգիր հին զրոյցս, որ պատմեալ եղեն վաղ ուրեմն ի մէջ իմաստնոց Յունաց եւ հասին մինչեւ ի մեզ այս զրոյցք

ի Գործի եւ ի Բանան անուն կոչեցելոց, եւս երրորդ ումն Դաւիթ, Թէպէտ եւ յոյժ սակաւուք երկրորդել» (Ա. 6)։ Մովսէս միւսանգամ կ'անդրադառնայ Դաւթի, Թէեւ առանց անունը յիշելու, Ա. 21 գլխու մէջ, այս անգամ Պարզրի Թարգմանութիւնը ներբողելու համար. կը գրէ. «Արժան է մեզ աստանօր մեծ գործ կատարել եւ բազում ասել առարկութիւնս բանից. զորոց մեզէն իսկ զհիւսունս[3] այսպիսեաց բանից ընթեռնուլ արժանաւորեցաք ի չորս Հագներգութիւնս զարդաստաւորին ի բանս եւ զիմաստոյն իսկ եւ զ'ի մէջ իմաստնոց իմաստնագունին»։

Մովսէս Խորենացի այս տեղ առեղծուած մը կը դնէ մեր առջեւ, զոր պէտք է փորձել լուծել։ Առ այս կարեւոր է նախ նկատի առնել հագներգութիւն բառին ծագումը, ժամանակը, իմաստը։

Հագներգութիւն առաջին անգամ գործածուած է Դիոնեսիոս Թրակացւոյ Արուեստի (Քերականութեան) հայերէն Թարգմանութեան մէջ. «Յաղագս Հագներգութեան։ Հագներգութիւն է մասն քերդածաց ներպարառեալ ստորադրութեան։ Եւ ոգեալ է հագներգութիւն ի հագնելոյ կարկատուն բանս. եւ կամ ի սարդենի մահակէ՝ պար գոլով երգել զհոմերական քերդածսն» (Ադոնց, Քերակ., էջ 4)։

---

[3] Բնագիրն ունի «զհիմունս». որ հոս իմաստ չունի. կ'ուղղեմ յեցած Ա. 18 «ի հիւսման պատմութեան» տեղիքի վրայ։

Հոս խօսքը յն. ῥάψῳδος (հաղներգող) եւ ῥαψῳδία (հաղներգութիւն) բառերու ստուգաբանութեան եւ իմաստին շուրջն է: Յոյնն կազմուած է ῥάπτω, կարկատել, կցկցել եւ ᾠδή, երգ բառերէն. ասկէ հայերէնը՝ հաղն-երգութիւն. հաղն-եմ բային արմատը մեզի այլուստ անծանօթ, պէտք է ունենայ կարկատեմ իմաստը: Կան նաեւ կարծողներ, որ յոյնը ῥάβδος, «մահակ, գաւազան» բառէն ծագած ըլլայ, ուստի՝ գաւազան-երգութիւն իմաստով: Դասական շրջանի թարգմանիչները այս ռափսոդիա բառը թարգմանած են «ճառստող». «Սուրբ աւետեացն ընթերցուածքն մի՛ իբրեւ առասպելք կամ ճառստողք երեւեսցին՝ որոց աւետարանացն պատմութիւնք». Կիւրեղ Երուս. Կոչումն Ընծայութեան, էջ 275:

Հին հելլէններու քով սովորութիւն էր հաղներգողներու դափնեպսակ, գաւազան ի ձեռս, շրջիլ գիւղէ գիւղ, քաղաքէ քաղաք, նաեւ կացուրդներու ժամանակ, երգել հատուածներ Հոմերոսի քերթուածներէն: Ասկէ Հոմերոսի Իլիականի եւ Ոդիսականի 24 + 24 երգերը կոչուեցան Հոմերական հաղներգութիւններ: Կը յիշեմ.

Փիլոն, Հեռ. 10. «դայս... եւ Հոմերոս տակէ յԵղիադա (Iliade) ի սկզբան ԺԳ.ի հաղներգութեան ի ձեռն այսոց տաղից»: Նոննոս. «Եւ այս ի հաղներգութիւնս Հոմերոսի գրեալ է» (ՆՀԲ): Դաւթի վերլուծութիւն Պորփիւրի, էջ 253. «Հոմերականաց

*հաղներգութեանցն»: Հետաքրքրական է նաեւ Սոկրատի թարգմանութեան տեղիքս (Զ. 6), «եւ այժմ իսկ արարողին Ամմոնիոսի զնոյն պատճառն* հագներգեալ» (*էջ* 513), *այսինքն «եւ այժմ իսկ պուետիկոսն* (ποιητὴς) *Ամմովնիոս զնոյն իրաց ճառատողս յօրինեաց». յն. ῥαψῳδῆσαι, հաղներգեաց:*

*Մ. Խորենացի չորս անգամ գործածած է «հաղներգութիւն» բառը. նախ Ա. 6, զոր տեսանք վերը. երկրորդ անգամ Բ. 9. ուր վստահութիւն չնչելու համար իր ընթերցողներուն, թէ ինքը օգտուած է անձամբ Եդեսիայի Դիւանէն, վկայութիւն կը բերէ Եւսեբիոս Կեսարացւոյ Եկեղեցական Պատմութենէն այն տեղիքը, ուր խօսուած է այդ Դիւանի գոյութեան մասին*[4]. *«Գտցես յԱ. հաղներգութեանն յերեքտասներորդ թուին». այսինքն Եկեղեցական Պատմութեան հայերէն թարգմանութեան Ա. գիրքի ԺԳ. գլուխը. ուստի հաղներգութիւն՝ գիրք եւ թիւ՝ գլուխ իմաստով:*

*Երրորդ անգամ Բ. 92. «Պատմութեանց եւ ոչ զովեստից է ժամանակս. մանաւանդ զի եւ հաղներգութիւնս ըստ իւրաքանչիւր պատմագրաց արտասանութեանց, եւ ոչ յատուկ միայն (ի մէնջ) չարագրեցաւ»: Խօսքը Բ. գրոց մասին է. ուստի «հաղներգութիւն» դարձեալ «գիրք» իմաստով գործածուած է:*

---

[4] *Հմմտ. Օ. Կարիէրի նկատողութիւնը Հանդ. Ամս.* 1896, *էջ* 97—98:

*Չորրորդ տեղիքն է Գ. 52. Սահակ եւ Մեսրոպ «տեղեկացեալ գիտացին ոչ լինել բաւական այնու (Դանիէլեան) նշանագրօք ստոյգ հօրովել զհեղենայ բառից հայկականաց* համներգաբար՝ *մուրացածոյին այնուիկ զծագրութեամբ»: Հոս բառս «համներգաբար» ըստ երեւոյթին կազմուած է նմանութեամբ յն. ῥαψῳδικῶς, քերթուածօրէն:*

*Անդրադառնանք այժմ մեզի ներկայացուած առեղծուածին: Ո՞վ է այդ «արդասաւոր ի բանս իմաստունն», նոյն իսկ «ի մէջ իմաստնոց իմաստնագոյնը»: Հ. Ղ. Ալիշան կը պատասխանէ. Դաւիթ, «գուցէ Հնագոյն քան զԱնյաղթն[5]»: Ստ. Մալխասեան կը գրէ. «Թվում է, թէ Դաւիթ «Անյաղթ» փիլիսոփայն է, որին մի անգամ էլ անորոշ կերպով յիշել է» Խորենացին (Ա. 6)[6]: Դաւիթ փիլիսոփայի, «եռամեծ», «անյաղթ» տիտղոսները ճշգիւ կը համապատասխանեն «ի մէջ իմաստնոց իմաստնագոյն եւ ի բանս արդասաւոր» իմաստնոյն:*

*Ի՞նչ աշխատութիւն է «Հիւսմունքն ի չորս համներգութիւնս». Հ. Ալիշան նկատի առնելով «համներգութիւնքը», համարած է թէ Դաւիթ «համներգու», ըստ Գր. Մագիստրոսի՝ «համներգող» է. այսինքն գրած է 4 համներգութիւններ, քերթուածներ:*

---

[5] *Հայապատում, Ա.* 42—43:

[6] *Թարգմանութիւն Մ. Խորենացւոյ Պատմութեան, Երեւան* 1940, *էջ* 270, *ծան.* 69:

Նկատելով տեղը՝ այդ Հիւմունքը պէտք է հաղներգուած ըլլայ ըստ Հոմերոսի Ոդիսականին՝ իբրեւ Պարոյրական մը «ի չորս հաղներգութիւնս». զոր, ինչպէս կը հաւաստէ Խորենացին, բաղդը ունեցած է կարդալու: Ան կարդացած է եւ ըմբռշխնած այդ Հիւմունքը, բայց անոր բովանդակութենէն որ եւ է տեղիք, գոնէ տողիկ մը, յառաջ չէ բերած. չէ յիշած անգամ այդ հաղներգութեանց ոչ միայն հաղներգողին անունը, այլ նաեւ իսկական վերնագիրը. չէ մատնանշած, թէ ուր գտած է այդ քերթուածքը, մինչ Եւսեբիոսի Եկեղեցական Պատմութեան գիւտը մանրամասնօրէն պատմած է: Եթէ այն ծանօթ ըլլար հրապարակի վրայ, անշուշտ ժամանակակիցներէն մէկն կամ միւսը ակնարկութիւն մը ըրած պիտի ըլլար, մանաւանդ քերականագէտները: Ինձ կը թուի, թէ Մովսէս նաեւ հոս հաւատացնել փորձած է իր ընթերցողներուն, թէ ունեցած է ձեռքի տակ նաեւ Պարոյրի պատմութեան համար աղբիւր:

Ինչպէս տեսանք վերը, Մ. Խորենացւոյ քով «հաղներգութիւն» «գիրք» իմաստն ունի: Այս տեղ «ի չորս հաղներգութիւնս» ամփոփուած են «Դաւիթ անյաղթ փիլիսոփայի» չորս իմաստասիրական գործերը, որոնց հեղինակ եւ թարգմանիչ համարուած է Դաւիթ Հարքացի անյաղթ փիլիսոփայ. ասոնք են.

1· *Յառաջաբանութիւնք իմաստասիրութեան ։*

2· *Մեկնութիւն Արիստոտէլի Ստորոգութեանց ։*

3· *Վերլուծութիւն Ներածութեան Պորփիւրի ։*

4· *Մեկնութիւն Վերլուծութեան Արիստոտէլի ։*



## ՅԱՒԵԼՈՒԱԾ

*Վերադոյն, էջ 44—45, քննութեան առած էի Գուրգէն քարտուղարի եւ պրոտոսպաթարի յիշատակարանը։ Կ՚անդրադառնամ անոր նոր տեսութեամբ։*

*Յիշատակարանն էր. «ի ժամանակ(ի)ս (յ)այս(մ) յորում Հ. եւ Զ. էր թուականն Հայոց, ես Գուրգէն քարտուղարս Հայոց մեծաց եւ սուրբ թագաւորացն պրոտոսպաթար ստացող եղէ գրոցս այսմ» որ էր խակաց գիրք։*

*Անմեկնելի մնացած էր «ՀԶ. թուականն Հայոց»։ Այժմ հարց կը դնեմ. այս թուականս Հայոց մե՞ծ թուականը համարելու է, թէ փոքրը։ Մեծը կու տայ մեզի* (551 + 76 =) 627, *երբ տակաւին Հայոց թուական չկար. փոքրը* (1084 + 76 =) 1160, *երբ Մանուէլ Ա. Կոմնենոս էր Բիւզանդական պետութեան միապետը եւ Հայոց Մեծաց Կաթողիկոսը Գրիգոր Տղայ Պահլաւունի։*

*Վերջնոյս վկայ ունինք* Քարտուղար *բառն եւ պաշտօնը։ Բառիս ծնունդն եւ բարգաւաճութիւնը կը պատմուի այսպէս. ունէր լատին լեզուն* charta *բառը, որ կը նշանակէ թուղթ, մագաղաթի մը էջը. զայն փոխ*

*տուին յոյնը՝* χάρτης, *յոյնէն՝ հայր* քարտ, քարտէս: Charta *ստորին լատիներէնին մէջ կը ստանայ նուազական ձեւ* chartula, *մանր մանր, հատ հատ քարտիկ, թղթիկ. որմէ յառաջացած է* chartularius, *եւ անցած Յունաց՝* χαρτουλάριος, *Ասորւոց՝* քարտուլարա, քալթուլարա, *Հայոց՝* քարտուղար:

*Քարտուղար կը կոչուէին ի սկզբան այն վանականները, որոնց յանձնուած էր պահել ամէն հաշուական թուղթերը, ինչպէս նաեւ այն հրովարտակները, պարգեւագիրները, մուրհակները եւ այլն, որոնք վանական տուներու կը հայէին: Անոնց օրինակին հետեւեցան Եպիսկոպոսարանները, եկեղեցիները, նաեւ Թագաւորներն եւ իշխանները:*

*Մարիլլոնի համաձայն քարտուղարներու սկիզբը Ժ. դարն համարելու է:*

*Բայց «քարտուղար» բառը աւելի հին ըլլալու է. կը յիշուի ան Համէական օրինագիրի մէջ, որ Յուստինիանոսի օրով, Զ. դարու առաջին կէսին, լատիներէնէ բառ առ բառ յունարէնի թարգմանուեցաւ:*

*Այս բառիս ասորերէնը կիրարկած է Յովհաննէս Եփեսացի իր Եկեղեցական պատմութեան մէջ: Իսկ հայերէնը գործածած է Մովսէս Խորենացի իր Հայոց Պատմութեան մէջ. այս տեղիքներն են.*

*Բ. 64. «Աջող քարտուղարն Ադաթան-*

*գեղոս», որ գրած է Գրիգորի եւ Տրդատի պատմութիւնը :*

Գ. 47. *Մեծն Ներսէսի մահէն ետքը Մեսրոպ «ի դրան արքունի կարգեալ քարտուղար*[1]» :

Գ. 52. *«Ոչ փոքր ինչ կրէր աշխատութիւն յաղագս քարտուղարի» Վռամշապուհ, երբ Միջագետք գացած էր համար առնելու գործակալներէն, որովհետեւ ձեռքի տակ չունէր Մեսրոպը :*

Բ. 60. *«Զորոյ զհետ քարտուղարութեամբ լեալ այս այր, որ զայս պատմութիւնս ետ մեզ» :*

*Այս չորրորդ տեղիքս խուսափած է ՆՀԲի հեղինակներու եւ Հ. Աճառեանի աչքերէն. այս ինքն ներս չեն առած Բառարանին մէջ* քարտուղարութիւն *բառը :*

*ՆՀԲ կը մեկնէ «Վերակացու նամակաց. ատենադպիր, դպրապետ» : Առաջինը լատին բառին իմաստն է :*

*Մովսէս Խորենացի Թ. դարու կէսին գործածած է* քարտուղար *իբրեւ դրագէտ, գրագիր, պատմագիր : Լսած է ան բառս հաւանօրէն Թ. դարուն Բիւզանդիոնէն Հայաստան*[2] *հայրենադարձ իշխաններէն :*

*Քարտուղարութիւնը Բիւզանդական պետութեան մասնաւոր պաշտօնի բարձրացաւ ԺԲ. դարուն. եւ այն երկու ճիւղերով.*

[1] *Կոր. «կացեալ յարքունական Դիւանին» :*

[2] *Տե՛ս Ակինեան Հ. Ն., Ներսէս Լամբրոնացի, Վիեննա* 1956, *էջ* 337—346 :

*Քարտուղար գանձուց (χαρτουλάριος τοῦ σακελλίου) Քարտ. արմտեաց (χ. βεσιαρίου)*[3]*:*

*Ուստի «Գուրգէն քարտուղար Հայոց Մեծաց» ճշգիւ կը համաձայնի ժամանակագրութեան. Գուրգէն* 1160*ին Մանուէլ Կոմնենոսի օրով կարգուած էր քարտուղար Հայոց Մեծաց, այսինքն վերակացու եւ հաշուակալ այն գանձուց կամ արմտեաց, որոնք կու գային Յունաց ենթարկուած հայկական գաւառներէն:*

*Գուրգէն միանգամայն նաեւ «սուրբ Թագաւորացն պրոտոսպաթարն» էր: Վերադոյն խօսած եմ այս պատուանուն վրայ. այս տեղ կը յիշեմ նաեւ հետեւեալս:*

*Կիրակոս երէց Հայոց ՆԾԶ* (1007) *տարւոյն գրած է Աւետարան մը «ի գաւառին Մակեդոնոյ ի քաղաքին որ կոչի Անդրնապօլիս ի Թագաւորութեան Վասլին, որ ունի զաթոռն Կոստանդնուպօլսի... եւ Յովհաննէս պրոտոսպաթար Թագաւորի եւ պռօքսիմոս դուկիս Թոթորակնիս ճորտս, որ գրել ետու զուրբ Աւետարանս» (Վենետիկ, Մխիթ. Թ.* 116, *Ցուցակ Ա, էջ* 517)*:*

---

[3] G. Ostrogorsky, Histoire de l'état byzantin. Paris 1956, p. 276.



